# ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՊԱՍՔԱԼԱՅ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ Ի ԳԱՂՂԻԵՐԷՆ



Ի ՏՊԱՐԱՆԻ
ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ Ս. ՅԱԿՈԲԵԱՆՑ
ԵՐՈՒՍԱՂԷՄ

—1869—

# ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՊԱՍՔԱԼԱՑ

ԹԱՐԳՄԱՆԵԱՑ

Մ. Ս. ՏԷՐ ՍՏԵՓԱՆԵԱՆ ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏՑԻ
ԱՇԱԿԵՐՏ ԺԱՌԱՆԳԱՒՈՐԱՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ

ՀՐԱՄԱՆԱՒ

ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՊԱՏՐԻԱՐՔ

Տ. Տ. ԵՍԱՅԵԱՅ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ




ՏՊԱՐԱՆԻ
ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ Ս. ՅԱԿՈԲԵԱՆՑ
ԵՐՈՒՍԱՂԷՄ

-1869-

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Բանագէտները շատ օգտակար կը համարեն պատանեկաց՝ երեւելի մարդկանց կենսագրութիւնը կարդալ։ Որովհետեւ անոնց կենաց օրինակները խիստ ազդու կերպիւ կը տպաւորեն պատանեկական սրտի և մտքի մէջ, և գեղեցիկ արդիւնքներ կ՚արտադրեն։

Գրագիտական աշխարհը արդէն խոստովանած է Պասքալի մեծութիւնը. ուստի եւ մենք արժան կը համարենք այս մեծ և երեւելի կենսագրութիւնը հայերէն թարգմանութեամբ Հայ ազգի պատանիներուն նուիրել։



# ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՊԱՍՔԱԼԱՅ

Եղբայրս (*) 1623 տարւոյն յունիսի 19 թուականին ծնաւ Կլերմոնի մէջ. Հօրս անունը Ստեփան էր (որդի Պասքալայ) որ գահերէց էր մաքսատան մէջ. իսկ մօրս անունը Անթուանէթ. Երբ որ եղբայրս խօսիլ կարենալու հասակը մտաւ մի հազուագիւտ մտքի ցոյցեր տուաւ իրեն փոքր պատասխաններովը, զորս պատշաճ ժամանակին կը խօսէր. և մանաւանդ այն ամեն հարցումներով, զորս կ'ընէր իրերու բնութեան վրայ, որոնց վրայ ամեն մարդ կը հիանար.

(*) Պասքալի կենսագրութիւնը գրուած է իւր քրոջ ձեռամբ, որ է տիկին Փերիէ.

Այս սկզբնաւորութիւնը, որ գեղեցիկ յոյսեր կու տար, իրականութիւն էր, վասն զի նա իրեն հասակին աճման համեմատութեամբ օր քան զօր իւր ճարտարմտութեան սահմանը կ'ընդարձակէր, այնպէս որ իրեն հասակը ներածէն աւելի բարձր և նշանաւոր էր։ Մայրս 1626 ին մեռած էր, երբ եղբայրըս արդէն երեք տարեկան էր, և հայրըս մինակ մնալով ընտանեաց բոլոր խնամքը իւր վրայ առաւ, մանաւանդ իւր մի հատիկ տղայ զաւակին, որուն բնատուր յատկութիւնները և մանաւանդ անոր չնաշխարհիկ մտաց նորանշան ցոյցերը հօրս սրտին մէջ այնպիսի եռանդ մը բորբոքեցին, որ անոր կըրթութեան համար ուրիշ դաստիարակ մը չկրնալով որոշել, անձամբ անոր կրթութիւն տալու պաշտօնը յանձն առաւ։ Եւ երբ այնպէս ըրաւ, եղբայրս այլ և ոչ մի վարժարան մտաւ, և ոչ վարժապետ մը ունեցաւ բաց ի հօրմէս։

1631 Թուականին հայրս Փարիզ գնալով զմեզ տարաւ իւր հետ, և այն տեղ իւր բնակութիւնը հաստատեց։ Այս տեղափոխութենէն եղբայրս մեծ օգուտ քաղեց այն նպատակին համար զոր հայրս ունէր իրեն կրթութեան մասին. որովհետեւ յայտնի բան մ'էր որ եղբայրս չը պիտի կրնար վայելել մի և նոյն խնամքը գիւղի մը մէջ. ուր իւր հոգացողութիւնք և շարունակ իրեն մօտը յաճախող ընկերութիւնք կրնային շեղել զինքը իւր խորհրդէն, մինչդեռ Փարիզի մէջ բոլորովին ազատ էր, ուր աշխատութեան տալով ինքզինքը յաջողեցաւ այնքան հանճարիմաց և սիրելի հօր մը տուած խնամքներն ու կրթութիւնը արգասաւորել։

Մանկան այս կրթութեան համար ըրած հօրս գլխաւոր սկզբունքն էր մանկական կարողութենէն բարձր գործքերով չըզբաղեցնել. և ասոր համար անոր լատինական լեզուն չը կամեցաւ ուսուցանել տասներկու տարեկան չե-

կան, որպէս զի աւելի դիւրացնէ անոր այն լեզուն։ Այս միջոցիս մէջ, անոր ժամանակը անօգուտ չանցունելու համար հայրս անհոգ չեղաւ, այլ անոր ընել կուտար այն ամենը՝ ինչ բանի որ ընդունակ կը տեսնէր զանիկայ։

Անոր բոլոր լեզուաց վրայ տեղեկութիւն կուտար և կը ցուցնէր անոր թէ ինչպէս մարդիկ՝ քանի մը կանոններու տակ ամփոփած են զանոնք քերականութեան մէջ, և թէ այս կանոնները բացառութիւններ ունին, զոր մարդ կրնայ իւր ջանիւք իմանալ զանոնք և նշանակել. և թէ այսպէս մարդիկ գտած են միջոց առհասարակ ամեն լեզուները քաղաքէ քաղաք հաղորդելու։

Այս ընդհանրական գաղափարը յարդարեց անոր միտքը, և անոր քերականական պատճառները պարզեց. այնպէս որ երբ նա քերականութիւն ուսանելու սկսաւ, իրեն ամեն ըրածին պատճառները գիտէր, աւելի զա-

նոնք կ'ուսանէր, որոնք բացատրու-
թեանց կարօտ էին. Այս գիտութիւն-
ներէն յետոյ, Հայրս ուրիշ ուսմունք-
ներ ևս հաղորդեց եղբօրս: Շատ ան-
գամ անոր կը խօսէր բնութեան ար-
տաքոյ կարգի ազդեցութեանց վրայ
ինչպէս է վառօդը, և ուրիշ բաներ,
զորս ով որ քննելու ըլլայ, կը զարմա-
նայ բնութեան սքանչելեաց վրայ: Եղ-
բայրս այս ձեռնարկութեանը վրայ
շատ կ'ուրախանար, բայց ամեն բանի
պատճառները կ'ուզէր գիտնալ. և ո-
րովհետեւ ասոնք ամենը իրեն ծանօթ
չէին և Հայրս բաց 'ի սովորական բա-
ներէն (որոնք լուծուած էին արդէն,)
ուրիշ բան չէր ուզեր պատմել. ուստի
միշտ դժգոհ կը մնար. վասն զի նա ու-
նէր զարմանալի մտքի մը յատկութիւ-
նը սխալներ նկատելու համար, և կա-
րող է մարդ ըսել որ միշտ և ամեն
բանի մէջ ճշմարտութիւնը միայն ա-
նոր մտաց առարկայն եղաւ. որովհե-
տեւ գոհ էր միայն իր գիտակցու-

թեամբ. Այսպէս նաև իւր մանկու-
թենէն ինչ որ իրեն յայտնի՝ ճշմարիտ
կ'երեւէր, անոր կը յարէր, այնպէս որ
եթէ մէկը իրեն թիւր մեկնութիւն
մի ընէր, կը ջանար անձամբ անձին
զայն որոնել, և բան մը ալ որոնելու
սկսաւ նէ ալ, զայն թող չէր տար մին-
չեւ գտնէր մէկը որ զինքը գոհ ընէ.
Ընտանեկան ընկերութեան մը մէջ սե-
ղանի տակ եղած ժամանակնին անոնց-
մէ մէկը դանակով խեցեղէն սնակի մը
զարնելով ուզեց որ մեծ ձայն մը հանէ,
բայց երբ ձեռք վրայ դրին ալ չը հըն-
չեց. Նա՝ եղբայրս ուզեց մի և նոյն
ժամանակ անոր պատճառը իմանալ,
և այս փորձառութիւն առիթ եղաւ
որ անիկայ ձայներու վրայ ուրիշ գիւ-
տեր ևս ըրաւ. և իւր տասներկու
տարեկան հասակին անոնց վրայ ճառ
մը յօրինելով հաննշանակեց, որ և իս-
կոյն ամենէն ընդունելութիւն գտաւ։
Եղբօրս հանճարը՝ երկրաչափութեան
մէջ մէկ. արտաքոյ կարգի դիպուա-

ծով սկսաւ յերեւան ելլել երբ տաս-
ներկու տարեկան էր տակաւին , և
զօր արժան կը համարիմ մանաւորա-
պէս յիշատակել հոս ։

Հայրս ուսողական գիտութեան
հմուտ ըլլալով, այս պատճառաւ այս գի-
տութեան մէջ յաջողակ անձանց հետ
բարեկամութիւն ունէր , որոնք շա-
բունակ իրեն մօտ կուգային . բայց ու-
րովհետեւ նա նպատակ ունէր եղբօրս
լեզուագիտութիւն ուսուցանել , և
գիտէր որ ուսողական ( մաթեմաթիք)
գիտութիւնը միտք հոգնեցնող ու-
սումն է , ուստի չը կամեցաւ որ եղ-
բայրս ծանօթութիւն մը ունենայ այս
գիտութեան վրայ . վախնալով որ չըլլայ
թէ լատին և ուրիշ լեզուներ ուսանե-
լէ զայն դադրեցունէ , որոց մէջ կ'ուզէր
որ կատարելագործուի ։ Այսպէս նա
այս գիտութեան վերաբերեալ բոլոր
գրքերը անյայտացուց , և անոր ներ-
կայութեանը այս ուսման վրայ իւր
բարեկամներուն հետ անգամ խօսելէն

կը խուսափէր ։ Բայց այս ամեն զգացումները ոչ թէ միայն չէին արգիլեր եղբօրս հետաքրքրութիւնը, այլ նաեւ կը գրգռէին, այնպէս որ նա՝ շարունակ կ'աղաչէր հօրս որ իրեն մաթեմաթիքական ուսմունքը հաղորդէ. իսկ հայրս կը մերժէր, խոստանալով որ եթէ ուսանէր լատին և յոյն լեզուները, ուսողական գիտութիւնն ալ իբր անոր վարձատրութիւն կ'ուսուցանէր անպատճառ ։

Սա տեսնելով այս ընդդիմութիւնը հօրս կողմէն, օր մը հարցուց անոր թէ ի՛նչ էր այս ուսումը, և թէ ի՛նչ միջոցաւ մարդիկ անոր վրայ կը խօսէին կամ կը ճառէին. հայրս ալ պարզապէս ըսաւ անոր թէ նա՝ ճիշտ ձեւեր շինելու և անոնց ունեցած բոլոր համեմատութիւնները գտնելու միջոց մ'է. և միևնոյն ժամանակը ուրիշ անգամ անոր վրայ խօսք բանալու ու անոր վըրայ խոկալու հրաման չը տուաւ ։ Բայց եղբօրս միտքը, որ այս սահմանին մէջ

չէր կրնար պարփակել, երբոր այս փո-
քրը յայտարարութիւնը լսեց՝ թէ ու-
սողական գիտութիւնը անվրէպ միջոց
մ՚ է ճշգրիտ ձեւերն նկարելու, սկսաւ ի-
րեն զբօսանաց ժամերուն մէջ անձամբ
անոր վրայ խորհրդածութիւն ընել
որահի մը մէջ միայնակ, ուր ինքը կը
զբօսնուր. կ՚առնէր ածուխ և տախ-
տակներու վրայ ձեւեր կըսկսէր շինել
և զայն կատարելու համար միջոցներ
փնտռելով. (օրինակի համար, բոլո-
րովին կլոր շրջանակ և եռանկիւն մը,
որուն կողմանքը և անկիւնները հաւա-
սար են, և ուրիշ ասոնց նման բաներ)։
Այս ամենը ինքը միայնակ գտնե-
լէն յետոյ, ասոնց մէջ ձեւերու համե-
մատութիւնները կը փնտռէր. Բայց
որովհետեւ հայրս մեծ ջանք ըրած
էր ծածկել ամեն բան անկէց, այս
պատճառաւ անունները երբէք չէր
գիտեր, որով ստիպուեցաւ անձամբ
անձին անոնց սահմաններ կամ անուն-
ներ դնել. շրջանակը կը կոչէր նըր՝. գի-

ծը՝ գաւազան այսպէս և ուրիշները ։

Այս սահմաններէն զկնի նա ինքն իրեն համար խնդիրներ չըներ և լուծեց. և այսպէս մէկէն, դէպի միւսը մըղուելով իրեն հետախուզութիւնը այնքան յառաջ տարաւ, որ Եւքլիդի առաջին գրքին մինչև երեսուն երկու երրորդ առաջարկութեան հասաւ ։ Երբոր այսպէս ասոնց վրայ զբաղած էր, հայրս անոր յանկարծ սենեակը մտաւ առանց եղբօրմէս տեսնուելու. և տեսնելով զանիկա սաստիկ զբաղած՝ երկար ժամանակ այնպէս առանց տեսնուելու ստիպուեցաւ կենալ ։ Մարդ չը գիտէր թէ արդեօք ո՞րը աւելի զարմանք եղաւ, որդւոյն հայրը տեսնելը որուն դէմ յայտնապէս պատուիրանազանց կը գտնուէր ինքը, թէ հօրը որդին այս բոլոր գործքերուն մէջ տեսնելը. բայց հօրը զարմանքը աւելի մեծ եղաւ երբ անոր ինչ բանի պարապիլը հարցունելով, պատասխան ստացաւ թէ՝ Եւքլիդի առաջին գրքին երեսուն

երկու երրորդ առաջարկութիւնը կ՚ա-
ռնեմ։ Հայրս զայն փնտռելու հա-
մար իրեն ըրած դիտողութեան և
մտածութեան առիթը անորմէ խնդ-
րեց, որուն պատասխանեց՚նա թէ՝ ու-
րիշները գիտնալովս է որ զանոնք կ՚ուրա-
նեմ. և յետոյ մի և նոյն հարցումներն
ըրաւ հայրս անոնց վրայ, որով եղբայ-
րըս քանի մը հատը լուծեց զորս ինքը
չինած էր. և վերջապէս յետոյ գնալով
և բոլորակները բացատրելով մինչեւ
իւր ըրած սահմաններուն ու առած-
ներուն եկաւ։ Հայրս այս ճարտարա-
մտութեան և կարողութեան վրայ այն-
քան զարհուրեցաւ՝ որ առանց ալ ա-
նոր բառ մը արտասանելու թողուց
զանիկա և Պ. Փայլէօրին մօտ գնաց,
որ իւր մտերիմ բարեկամն էր, և ասի-
կա ևս բաւականին գիտնական մարդ
էր։ Հոն հասնելուն պէս Հայրս՝ ի-
բրև յափշտակուած մարդ մը, անշարժ
կայնեցաւ. զայս տեսնելով Պ. Փայ-
լէօր, եւ մանաւանդ տեսնելով այն

տրտասուքը որ անոր աչքերէն կը թափէր, աղաչեց որ իրեն տհաճութեան պատճառը անյապաղ իրեն ըսէ։ Հայրս անոր պատասխանեց թէ՝ ես կ'արտասուեմ ոչ թէ տրտմութենէ, այլ սրտիս ուրախութենէն։ Դուք քաջ տեղեակ էք արդէն այն հոգերուն և ջանքերուն, զոր իմ տղուս երկրաչափութեան ուսմունքը չուսուցանելու համար ըրի, վախնալով որ անիկա միւս բոլոր ընթերցանութեանց արգելք չըլլայ, սակայն տես ահա իրեն ըրածը։ Ասոր վրայ ցուցուց անոր բոլոր եղբօրս մօտ գրածները. որոնց մէջ քանի մի այսմանաւ մարդ կրնար ըսել որ ուսողական գիտութիւնը նա հնարած է։ Պ. Փայյէօր ոչ սակաւ զարմացաւ՝ որքան որ զարմացեր էր հայրս, և անոր ըսաւ որ՝ արդարութիւն մը չէր ա՛լ անորմէ այս գիտութիւնը արգիլելը, այլ պէտք է իրեն թողուլ, որ սոյն գիտութեան վերաբերեալ գրքեր կարդայ։

Հայրս յարմար առիթ համարե-
լով՝ անոր Սոսիէթէ Տորէրը տուաւ,
իրեն զբօսանաց ժամերուն մէջ կարդա
լու ։ Նա զանոնք տեսնելով և առանց
ոչ մի բացատրութեան կարօտութիւն
ունենալու հասկնալով՝ սկսաւ ինքն
ալ յօրինել, և այնքան յառաջացաւ
որ միշտ ներկայ կը գտնուէր այն շա-
բաթական ժողովներուն, ուր Փարիզի
բոլոր հանճարեղ անձինքը կը ժողովէ-
ին իրենց երկասիրութիւնները բե-
րելու՝ կամ ուրիշներունը քննելու հա-
մար ։ Եղբայրս այս ժողովոց մէջ նշա-
նաւոր էր թէ՛ քննութեան և թէ իրեն
մրցեանց համար, որովհետեւ ինքը
շարունակ նորանոր բաներ կամ իրո-
ղութիւններ բերողներէն մէկն էր ։
Այս կաճառաց կամ ժողովոց մէջ Իտա-
լիայէն, Գերմանիայէն և ուրիշ օտար
երկիրներէն ղրկած խնդիրներ կային,
որոց իւրաքանչիւրին վրայ եղբայրս ի-
րեն կարծիքը յայտնեց, այնքան ճշդու-
թեամբ որ ուրիշներէն մէկը չէր կա-

թողուցած․ քանզի այնպիսի կենդանի լոյս մը ունէր անիկա, որ պատահեցաւ երբեմն ուրիշներէն չը նշմարուած սխալները՝ ինքը տեսաւ և ուղղեց։ Սակայն այս բոլոր ուսմանց մէջ երկրաչափութեան՝ միմիայն իրեն զբոսանաց ժամանակ կը պարապէր, վասն զի լատինական լեզուն կանոններու վրայ կը սովորէր, զոր հայրս առանձինն յօրինած էր։ Եւ որովհետեւ այս գիտութեան մէջ իրեն այնքան եռանդեամբ փնտռած ճշմարտութիւնը կը գտնէր, ուստի ատոր վրայ այնպէս գոհ գտնուեցաւ, որ բոլոր իւր մտադրութիւնը դարձուց անոր վրայ, և այնպէս յառաջադիմութիւններ ըրաւ անոր մէջ քիչ ժամանակէն, որ իւր տասն ու վեց տարին կոնայնեաներու վրայ ճառ մը գրեց․ և այս՝ միտքի այնպիսի մեծ ճիգ մը համարուեցաւ, որ ամեն մարդ կ՚ըսէր թէ Արքիմեթէս երկրաչափէն ՚ի վեր երբէք այսպիսի կատարեալ գործ մը չը տեսնուեցաւ․

և իմաստուն անձինքը կը խորհէին զանոնք տպելու, զի նոքա կ'ըսէին որ այն երկը միշտ զարմանալի պիտի ըլլայ, և նաև եթէ տպուէր որ այն ժամանակի մէջ ասիկա հնարողը տասն ու վեց տարեկան հասակին մէջ էր, աւելի այս պարագայս պիտի յաւելցնէր անոր արժանաւորութիւնը. բայց եղբայրս՝ փառասիրութեան և համբաւոյ տենչը իր մէջ չունենալով արժէք չը տուաւ անոր շատ, և այսպէս այս երկը չը տպուեցաւ.

Այս ժամանակներուս մէջ եղբայրս լատիներէն և յունարէն կ'ուսանէր, և բաց 'ի յայսմանէ՝ ճաշի ժամանակ և ճաշէն վերջը, հայրս երբեմն տրամաբանութեան և երբեմն բնագիտութեան և փիլիսոփայութեան ուրիշ մասանց վրայ կը խօսէր անոր, և այս է իրեն բոլոր ուսածները առանց վարժատուն մը երթալու, և անոնց համար հօրմէս զատ ուրիշ վարժապետ չունեցաւ, նոյնպէս և յետոյ սովր-

բանձներուն համար ։ Հայրս անոր այսպէս ամէն գիտութեանց մէջ ըրած յառաջադիմութեանց վրայ շատ կ'ուրախանար, բայց չըՆշմարեց որ այն մեծ և չարունակեալ զբաղումները այսպիսի մի փափուկ հասակի մէջ անոր առողջութեանը կարող էին շատ վնասել. և յիրաւի տասն և ութը տարեկան էր՝ սկսաւ նա տկարանալ ։ Բայց հիւանդութիւնը զոր նա կրզգար, այն ատեն այնքան զօրաւոր չըլլալով, չկրցաւ զայն իւր սովորական զբաղումներէն արգիլել. այնպէս որ նա իւր տասնուհինը տարեկան հասակին մէջն էր երբ հնարեց Թուաբանական գործին, որով ոչ թէ միայն առանց գրչի և առանց հաշուի գործիքներու կը կարողանայ մարդ կատարել հաշուոյ ամէն տեսակները, այլ և առանց Թուաբանութեան ոչ մի կանոնը գիտնալու՝ մարդ կրնայ ընել բոլորը անվրէպ ճըշդութեամբ ։

Այս գործը բնութեան մէջ իբրև

մէկ նոր բան համարուեցաւ, վասն զի մեքենայի վերածեց գիտութիւն մը որ մտքի մէջ կը գահակալէ, այնպիսի ըս-տուգութեամբ մը բոլոր համարողա-կան գործողութիւնները ընելու միջոցը գտնելով, առանց խորհելու կարօտու-թիւն մը ունենալու ։ Այս աշխատու-թիւնը զինքը շատ հոգնեցուց, ոչ թէ մտածման և կամ՝ շարժման համար զոր առանց դժուարութեան գտաւ, այլ այս բոլոր բաները (զանոնք) գոր-ծաւորաց հասկցնելու համար ։ Վա-սն զի երկու տարուան մէջ հաշիւ-այն կատարելութիւնը ստացաւ, ուր է հիմայ ։

Բայց այս հոգնութիւնն ու տկա-րութիւնը, զորս ինքը քանի մը տար-ուընէ 'ի վեր ունէր, զինքը հիւան-դութեան մէջ ձգեցին, այնպէս որ շատ անգամ՝ մեզ կ'ըսէր թէ՝ տասն և ութը տարեկան հասակէս ասդին օր մը առանց ցաւի երբէք անցուցած չունիմ։

Այսու ամենայնիւ այս ցաւերը

չարունակ միօրինակ սաստկութեամբ չըլլալով, երբ մէկ քիչ կը հանդարտէին ; իսկոյն նորա միտքը կըսկսէր նոր բան մը որոնելու ։ Քսան երեք տարուան շրջանը մտնելով, և Թօրիչէլլիին փորձերը տեսնելով, ինքն ալ յետոյ ուրիշ փորձեր հնարեց, զոր իրեն փորձառութիւնները կ'անուանեն . որ պարզապէս կ'ապացուցանէր թէ այն բոլոր ազդեցութիւնները, զոր մարդիկ մինչև այս ժամանակ դատարկութեան կը տային, օդին ծանրութենէն յառաջ կը գան ։ Մարդկային գիտութեանց մէջ իրեն միտքը հոգնեցընող վերջին զբաղումը այս եղաւ . և թէպէտ յետոյ անիւը հնարեց, սակայն ասիկայ առանց ջանադրութեան և առանց մըտածելու գտնելուն համար, (ինչպէս տեղը պիտի ըսենք,) մեր խօսքին չը հակառակիր ։ Այս փորձառութենէն անմիջապէս յետոյ, երբ տակաւին քսան չորս տարեկան հասակին չէր մտած, աստուածային Նախախնամութիւնը

այնպէս կամեցաւ որ նա բարեպաշտական գրուածքներ կարդալով իւր միտքը լուսաւորէ. և աստով իմացաւ եղբայրս թէ քրիստոնէական կրօնքը կըստիպէ զմարդ միայն Աստուծոյ համար ապրիլ և ուրիշ առարկայ մը չունենալ բաց 'ի անկէ. և այս ճշմարտութիւնը իրեն այնքան յայտնի օգտակար և հարկաւոր երեւցաւ, որ իւր բոլոր խուզարկութիւններն ու հետամտութիւնները վերջացնելով, և բոլոր ուրիշ գիտութիւններէն հրաժարելով մի միայն այն մէկ բանին ըղձալը որոշեց, զոր Յիսուս Քրիստոս կ'անուանէ միայն կարեւոր (1), այն է աստուածային ճշմարտութեանց և պատուիրանաց նուիրել իր կեանքը.

Աստուծոյ մէկ մասնաւոր պաշտպանութեամբը նա իր երիտասար-

(1) Մարթա՛, Մարթա՛ դու հոգաս և բազում իւիք զբաղեալ ես, բայց սակաւ ինչ պիտոյ է. Մարիամ մասն բարի ընտրեաց, որ ոչ բարձցի 'ի նմանէ ։ Ղուկ. Ժ. 41.

դութեան ամէն տեսակ մոլութիւններէն ազատ էր մինչեւ այն ատեն, եւ մանաւանդ աւելի հեռի գտնուեցաւ այնպիսի մոլորութիւններէ որ կրօնքի կընայէին, իրեն հետաքրքրութիւնները բնական բաներու մէջ սահմանափակելով։ Շատ անգամ ինծի կ՚ըսէր՝ որ այս երախտիքը ուրիշներու հետ հօրս կը պարտիմ. վասն զի ինքը դէպ ՚ի կրօնքը շատ ակնածութիւն ցուցնելով մանկութենէ ներշնչած էր անկէ եղբօրս ալ ուսուցանելով անոր թէ, ինչ որ հաւատոյ կը վերաբերի՝ անոր հնազանդելէ զատ անօգուտ է պատճառ որոնել։

Այն օրինակները՝ զորս շարունակ մէկ հօրէ մը կ՚ընդունէր, այն հօրէն, զոր կը սիրէր եւ կը պատուէր ՚ի բոլոր սրտէ, խորին տպաւորութիւն կ՚ընէր իրեն մտաց մէջ։ Այնպէս որ լսելով ինչ ինչ մոլորութիւններ կրօնական վարդապետութեան մասին, երբէք եւ ոչ մի կերպով վրդովեցաւ իրեն հաւա-

տատամնութիւնը, թէպէտ և ինքը տակաւին երիտասարդ էր. այլ նա որ ամէն բանի պատճառ կը փնտռէր իրեն հետաքրքրութեամբ լի և այնքան ընդարձակ և մեծ հանճարով, այժմ իբր մանուկ մը կը հնազանդի այն ամէն իրողութեանց, որք կրօնքի կը վերաբերին, մոլորական համարելով այն անձինքը որոնք այս գլխաւոր սխալման մէջ ընկած էին, թէ մարդկային բանականութիւնը ամէն բանէ վեր է և որոնք չէին ուզեր ճանաչել հաւատոյ սահմանը։ Ու այս իր պարզմտութիւնը անոր մէջ ցմահ թագաւորեց, մինչեւ անգամ այն օրէն՝ երբ նա որոշեց ձգել ուրիշ ամէն ուսմունքները և կըրօնականին հետեւիլ, չը զբաղեցաւ նոյն Աստուածաբանութեան հետաքրքրական հարցմանց մէջ, այլ իրեն մտաց բոլոր զօրութիւնը դարձուց քրիստոնէական բարոյականութիւնը ուսանելու և 'ի գործ դնելու, որուն և բոլորովին նուիրեց իրեն բոլոր տա-

ղանդներն ու ձերքերը, զորս Աստուած պարգեւած էր. որն որ իրեն կենաց մնացորդին մէջ ուրիշ բան չըրաւ՝ բացի 'ի գիշեր ցորեկ Աստուծոյ օրինաց վրայ խորհելէն։

Թէպէտ դպրոցական աստուածաբանութեան մասնաւոր ուսում մը չուսաւ, սակայն և այնպէս նա եկեղեցւոյ վճիռները դիտէր, որոնք ընդդէմ հերետիկոսութեան նուրբ ճարտարմտութեամբ հնարուած էին, և Աստուած այն ժամանակէն տուաւ առիթ անոր որ երեւցնէ ամենուն իւր նախանձախնդրութիւնը զոր ունէր առ կրօնքն։

Այս միջոցիս Ռուէն գաւառի մէջ էր նա, ուր հայրս արքունի գործակալութեան մէջ կը գտնուէր. և ուր կար նաեւ նոր փիլիսոփայութիւն ուսուցանող մէկը, որ բոլոր հետաքրքիր անձինքը կը զարմացունէր։ Եղբայրս ստիպուեցաւ իրեն բարեկամներէն երկու երիտասարդ մարդ-

կանց հետ այս մարդու մօտ գնալ ։ բայց շատ զարմացան, երբոր տեսան թէ անփկայ իրենց հետ բանակցելով և իրեն փիլիսոփայութեան սկզբունքները բացատրելով այնպիսի հետեւութիւններ կը հանէր անոնցմէ հաւատոյ խնդիրներու մասին, որ եկեղեցւոյ վճիռներուն դէմ առ դէմ կը հակառակէին ։ Այս փիլիսոփային իրեն թիւր խելամտութեամբը կ'ապացուցանէր՝ թէ Յիսուս Քրիստոսի մարմինը սուրբ Կուսի արիւնէն կազմուած չէր, այլ ուրիշ առանձին նիւթով մը ստեղծուած կը համարէր, և ուրիշ ասոր նըման բաներ ։ Ասոնք անոր դէմը խօսեցան, բայց նա իրեն մտքին վրայ հաստատուն կեցաւ ։ Ուստի ասոնք նըշմարելով այն վտանգը՝ զոր ապականեալ զգացմանց տէր եղող մէկը իրեն գաղափարները երիտասարդութեան հաղորդելու թոյլտուութենէն յառաջ պիտի բերէ, որոշեցին նախ՝ անենուն ազդարարութիւն ընել, և յետոյ

նել նոյն իսկ Ռուէնի արքեպիսկոպոսը Կալընի մէջ. որ այս ամէն իրողութիւնը աղէկ մը քննելով այնքան կարեւոր գտաւ զայն, որ իսկոյն իւր խորհրդականին յայտագիր մը ղրկեց, որուն մէջ յայտնապէս կը հրամայէր Պ. Տիւ Պէլային տալ հրաժարիլ այդ մարդուն հաւատոյ այն խնդրոց ուխալ կարծիքէն, որոց համար ամբաստանուած էր, և ամէն վէճ և հարցափորձութիւն կատարել խորհրդակցութեամբ ամբաստանողաց: Իրողութիւնը այժմ շատ դիւրին կատարուեցաւ. փիլիսոփայն արքեպիսկոպոսէն ատեան կոչուելով վերստին իւր բոլոր սխալ դրութիւններէն կամ վարդապետութիւններէն հրաժարեցաւ անկեղծօրէն, որովհետեւ անկէ ետքը երբէք ոխութեան նշոյլ մը զինքը ամբաստանողներուն դէմ չը ցուցուց, ասով մարդ կրնար մակաբերել որ նա անձամբ անձը խաբեր էր այն սխալ եզրակացութիւններով, զորս իւր սը-

դադարեցունել զայն բոլորովին իրեն վարդապետութիւնը տարածելէն, եթէ իրեն տրուած խորհրդին ընդդիմանայ։ Այսպէս պատահեցաւ իրողութիւնը։ Որովհետեւ նա այս խորհուրդը արհամարհեց, ուստի անոնք իրենց պարտաւորութիւն համարեցին իմաց տալ Գ. Տիւ Պէլային, որ այն ժամանակ հրամանաւ արք եպիսկոպոսին Ռուէնի վիճակին մէջ եպիսկոպոսական պաշտօն կը վարէր։ Գ. Տիւ Պէլայ այս մարդը որոնել տուաւ, և հարցափորձելով զայն, հաւատոյ երկդիմի դաւանութեամբ մը՝ զոր նա իրեն ձեռօք գրեց, բոլորովին խաբուեցաւ, և մանաւանդ մեծ բանի տեղ չդրաւ այս կարեւոր խնդիրը, որ երեք երիտասարդներէն առաջարկուած էր։ Սակայն երբ անոնք, այսինքն եղբայրս և իրեն երկու բարեկամները տեսան այս հաւատոյ դաւանութիւնը, ճանչցան անոր մեծ վնասակարութիւնը, որ զիրենք ստիպեց խիկ և խիկ երթալ գըտ-

խալ սկզբունքներէն կը հանէր։ Որչմարխոզը կը խոստովանինք որ բնաւ անոր մէջ մարդ չէր կրնար գտնար նըպատակ մը այնպէս դաւանելուն, և միւս կողմէն ալ զայն միմիայն իրեն մոլորութենէն ուղղելու՝ դիտաւորութիւնը ունէին միւսները, որպէսզի այն երիտասարդներն ալ անկէց ազատ մնան, որոնք այնպիսի նուրբ խնդիրներուն մէջ կարող չէին ճշմարիտը սխալէն որոշել։ Այսպէս քաղցրութեամբ գործը վերջացաւ և եղբայրս շարունակեց Աստուծոյ հաճոյ ըլլալու միջոցներ որոնել. և այս քրիստոնէական խոստովանութեան սէրը քսան և չորս տարեկան հասակին այնչափ իրեն մէջ վառեցաւ՝ որ բոլոր մեր տան մէջ ծաւալեցաւ։ Մինչեւ անգամ հայրս երբեք իրեն ամօթ չհամարելով որդւոյն վարդապետութեան հետեւիլ, մինչեւ իւր մահը շարունակ լի առաքինական գործառնութեամբ արդար կեանք մը անցուց. Բայց՝ որ

խիստ տաղանդաւոր էր և ճոխ մտաց-ծրից տէր, և իրեն մանկութենէն այնպիսի համբաւ մը ունէր, զոր շատ քիչերը կ'ունենան իգական սեռէն, այնպէս մը շարժեցաւ եղբօրս ճառերէն, որ բոլորովին Աստուծոյ նուիրուելու համար որոշեց հրաժարիլ այն ամեն օգուտներէն և աշխարհային վայելչութենէն զոր մինչեւ այն ժամանակ սիրած էր. և հաւատաւոր դարձաւ այն առեններէն մէկ սուրբ և ամենախիստ վանքի մէջ՝ ուր այնքան գեղեցիկ առաքինութիւններ մտցուց, որովք արդէն Աստուած զինքը զարդարած էր, և մարդիկ զայն աւելի մեծ պաշտօններու արժանի գտան, զորս մեծ հաւատարմութեամբ մը միշտ անթերի կատարեց. եւ այսպէս սրբութեամբ մեռաւ 1661 հոկտեմբեր 4 ին, երեսուն չորս տարուան հասակին մէջ:

Իսկ եղբայրս՝ զոր Աստուած իր բոլոր բարութիւնները գործելու համար կը ծառայեցնէր, կը տառապէր իրեն

շարունակեալ հիւանդութեանց մէջ, որ քանի գնաց սաստկացաւ. բայց որովհետեւ այն ժամանակ անիկա ուրիշ ուսմունք եւ գիտութիւն չէր ճանչնար՝ բայց միայն մարդկային կատարելագործութիւնը, ուստի մեծ զանազանութիւն մը կը գտնէր ասոր եւ մինչեւ այն ատեն իրեն միտքը հոգնեցնող գիտութեանց մէջ, ինչու որ իրեն տըկարութիւնները փոխանակ ուրիշ ուսմանց մէջ յառաջադիմելուն արգելք ըլլալու. ընդհակառակն անոր կը նպաստէին նոյն իսկ տկարութեանց մէջ, զորս զարմանալի համբերութեամբ կը կրէր։ Ասածներս զգալի ընելու համար կը պարտաւորիմ օրինակ մը յառաջ բերել։

Բաց 'ի միւս տկարութիւններէն կամ հիւանդութիւններէն տեսակ մը հիւանդութիւն եւս ունէր, որ չէր կըրնար հեղուկ բան մը խմել կամ կլլել առանց տաքցունելու, եւ այն ալ մէկ մէկ կաթիլ. եւ ասկէ զատ ունէր գըլ-

խոր անհատնելի ցաւ մը, և չափազանց տաքութիւն ընդերաց և ուրիշ շատ ցաւեր, որոց համար բժիշկները իրեն պատուիրեցին երկու օրը մի անգամ լուծողական դեղ առնուլ, մօտ երեք ամիս, այնպէս որ ամեն տեսակ դեղերը ընդունել պէտք եղաւ, զանոնք տաքցունելով և կաթիլ կաթիլ կլլանելով առանց տրտմութեան, որ ճշմարիտ տանջանք մ՚էր և իրեն մօտ բոլոր եղողներուն ալ ցաւալի ։

Այս զարմանքներուս շարունակութիւնը, և ուրիշներ զորս անոր գործածել տուին, զորնք քիչ շատ հանգստացուցին, բայց կատարեալ առողջութիւն չը տուին. այնպէս որ բժիշկները՝ զայն բոլորովին առողջացներու համար ապահովութեամբ ըսին որ մտաց զբաղմունքը թողուլ պէտք է, և միայն ազգային կարելի է ուրախանալու միջոցներ փնտռել զբօսանքներով ։ Աղքայրքս նախ և առաջ մերժեց այս խորհուրդը, քանի որ վտանգ կը նշմարէր

անոր մէջ. բայց վերջապէս հաստատե-
ցաւ հետեւիլ անոնց լսածին, իրենն
առողջութիւնը վերստին ձեռք բերե-
լու համար բոլոր իրեն ձիգը թափե-
լու պարտաւորութիւնը զգալով, եւ
խորհեցաւ որ պատուաւոր զբօսանքնե-
րը իրեն չեն վնասեր, եւ սկսաւ ներկե-
րու չափի զուարճանալ: Թէպէտ Ա-
ստուծոյ ողորմութեամբը ինքը ազատ
մնաց մոլութիւններէ, այնու ամե-
նայնիւ, որովհետեւ Աստուած զայն ա-
ւելի մեծ եւ կատարեալ կոչման կը
պատրաստէր, չը թողուց զանիկայ այս
վիճակին մէջ, եւ ձեռք առաւ այն նպա-
տակին համար միւս քայլը, ինչպէս որ
ժամանակին եղբայրը ձեռք առած էր
քայլը աշխարհային ճանապարհէ քա-
շել հանելու համար: Նոյն այն ժա-
մանակին հաւատացող էր, եւ սուրբ
կեանք մը կը փափաքեր, որ բոլոր վանքերն
մէջ եղողներուն օրինակ կրնար ըլլալ.
այս վիճակին մէջ ըլլալով, նա չկրցաւ
հանդուրժել, անտանելով որ նա՝ ա-

բուն Աստուածմէ վերջը այս շնորհքները կը պարունէր, չէ կրցեր զայն ժառանգել։ Ու որովհետեւ եղբայրս յաճախ զանիկա կը տեսնէր, ուստի այս աղյաճախ իրեն կը խօսէր անոր վրայ, և վերջապէս քաղցրութեամբ և զօրաւոր պատճառներով համոզեց զայն՝ որմէ ինքը առաջին անգամ՝ համոզուած էր։ Այսպէս եղբայրս որոշեց թողուլ բոլորովին աշխարհի հետ ունեցած հաղորդակցութիւնը և անցաւոր վայելքները՝ իր առողջութեան վտանգէն անգամ չակնածելով, որովհետեւ կը հաւատար՝ որ երջանկութիւնը ամեն բանէ նախամեծար է։

Այն միջոցին 30 տարեկան էր, և շարունակ հիւանդոտ, եւ ահա այս առենէն՝ մինչեւ իր մահը՝ անցուցած կենաց եղանակը միօրինակ էր։ Այս նպատակին հասնելու և իր բոլոր ամբողջութիւնները ջնջելու համար աներգախոխութիւնը դիւրին միջոց մը երեւցաւ իրեն, ուստի քանի մը ժա-

ժամանակ գիւղը բնակեցաւ, ուրկից վե-
րադարձած ժամանակ յայտնապէս և
այնքան անգամ կ՚ըսէր որ կ՚ուզէ աշխար-
հը թողուլ, որ վերջապէս աշխարհը
զինքը թողուց. և այս տեղափոխու-
թեան մէջ նա երկու գլխաւոր սկզ-
բանց վրայ հիմնեց իւր կենաց կանո-
նք, այսինքն հրաժարիլ բոլոր զուար-
ճութիւններէ և ամեն ունայնութիւ-
ներէ. և այս կանոնաւորութեան մէջ
իրեն կենաց մնացորդը անցուց. Այս
մէջ ալ յաջողելու համար սկսաւ ան-
կից ի վեր ինչպէս և մինչև վերջը
իրեն ծառայից սպասաւորութենէ
մասնակցիլ, որքան որ իւր կարողու-
թիւնը կը ներէր. օրինակի համար,
սենեկերուն պառկելու մահիճները
ինքը կը շտկէր, և խոհանոցէն իւր
ճաշը ինքը կը բերէր սենեկին մէջ
և վերստին հոն կը տանէր. և ուրիշ-
ները միայն կը գործածէր իրեն կերա-
կուր եփելու և քաղաք երթալու և
ուրիշ այնպիսի բաներու՝ զոր անձամբ

անձին ինքը կարողութիւն չունէր ընելու ։ Իրեն բոլոր ժամանակը աղօթքով և սուրբ գրոց ընթերցմունքով կ՚անցունէր . այս վերջիններուն մէջ անհուն կամ չափազանց ուրախութիւն կըզգար և կ՚ըսէր՝ որ սուրբ Գիրքը մտաց գիտութիւն մը չէ, այլ արուեստ . որ անոնց համար հասկնալի է, որոնք ուղիղ սիրտ ունին . իսկ անոնք՝ որոնք ուղիղ սիրտ չունին, անոնց համար բոլորովին մութ է ։

Այս դիտաւորութեամբ շարունակ Ս. Գիրքը կը կարդար հրաժարելով բոլորովին իւր մտաց ամէն լոյսերէն . և այնպիսի մտադրութեամբ և շարունակութեամբ կը զբաղէր անոր, կը դեգերէր անոր մէջ . որ ամէնը գոց գիտէր, այնպէս որ սխալ երբէք մարդ չէր կրնար բան մը իրեն սորվել . որովհետեւ երբ Ս. Գրոց վրայով խօսք մը ըլլար, ճշդութեամբ կ՚ըսէր՝ այս սուրբ գրքին է և այն չէ՝ ըսելով տեղը կը ցուցնէր ։ Մեծ հաստատութեամբ

մեկնութիւնները կը կարդար, վասն զի կրօնի յարգանքը՝ ուր ինքը մանկութենէ սնած և մեծցած էր, ջերմ սիրոյ փոխուած էր հաւատոյ ճշմարտութեանց համար, թէ՛ մտքի հնազանդութեան կամ հպատակութեան մասին և թէ՛ երկրիս մէջ 'ի կիր արկանելու, որուն մէջ կ'ամփոփի բոլոր կրօնը. և այս սէրը կըստիպէր զինքը ջնջել այն ամենը, որ կրնար ընդդիմանալ և հակառակել այս ճշմարտութիւններուն:

Բնական ճարտարախօսութիւն մ' ունէր, որ անոր սքանչելի դիւրութիւն մը կուտար խօսելու ինչ որ կը կամէր, և ինքն ալ անոր վրայ այն կանոնները աւելցուց, զորս տակաւին անձ մը խորհած չէր, և որոնք իրեն այնչափ օգտաւէտ էին, որ իրեն գրած ոճին հեղինակ ինքը կը համարուէր. այնպէս որ՝ ոչ թէ միայն կրնար ըսել ինչ որ կ'ուզէր, այլ նաև կ'ըսէր այն ոճով. ինչպէս որ իրեն հաճելի կը

թուէր ։ եւ իրեն գրութիւնը կը ներ-
կայացնէր ճշմարտութեանը այն՝ զոր
ինքը կ՚առաջադրէր ։ եւ այս բնական
յատակ եւ միանգամայն զօրաւոր եւ ազ-
դու գրելու ոճն այնքան իրեն յա-
տուկ եւ մասնաւոր էր, որ երբ Պօ-
ստակեան նամակները հրատարակուեցան,
ամենուն մարդ իմացաւ որ նորա գրածն
է. Թէպէտ եւ նոյն իսկ իրեն մեր-
ձաւորներէն քանիցս երբեմն զայն
բողոքագիրն ծածկել ։ Այս միջոցիս էր որ
Աստուած հաճեցաւ իւր աղջկան բը-
ժշկել մէկ մեծ ցաւէ, այն է արտա-
սուական վէրքէ մը (fistule lacrymale) որ 3
տարի եւ կէս այնպիսի կերպով մը ճա-
րակեցաւ, այն որ Թարախը ոչ Թէ մի-
այն աչքէն՝ այլ եւ քթէն եւ բերնէն
կ՚ելլէր, որուն համար ամենաճարտար
վիրաբոյժները անբժշկելի է կ՚ըսէին.
սակայն մէկ վայրկենի մէջ բժշկուեցաւ
առանց նշոյլ մը չթողլոյ ։ եւ այս հրաշքը
այնչափ վաւերական դարձաւ, որ ա-
մէնքը կը խոստովանէին, ամենամեծ բը-

յարգանքը՝ զոր միշտ ունէր դէպ ՚ի կրօնն ։

Եւ այս առթիւ անոր մէջ անհուն բաղձանք մը ծնաւ շարունակ աշխատիլ՝ անաստուածներուն գլխաւոր եւ ամենաթիւր կարծիքներն ու ճարտարմտութիւնները հերքելու . մեծ եռանդով կը քննէր հակառակորդաց յառաջբերութիւնները , եւ իւր բոլոր ուշադրութիւնը դարձուցած էր միջոցներ գտնել զանոնք՝ համոզելու , ինքզինքը բոլորովին այս աշխատութեան տուած էր ։

Իւր աշխատութեանց վերջին տարին բոլորովին ՚ի գործ դրաւ այս նիւթիս վրայ զանազան խորհրդածութիւններ հաւաքելու . սակայն Աստուած՝ որ իրեն այս նպատակը եւ իրեն բոլոր մտածութիւնները ինքնին ազդած էր , չուզեց որ նա՝ այն նպատակը ՚ի կատարում հասցունէ , որուն գաղտնիքը անհաս է մեր մտքէն ։

Սակայն աշխարհէն հեռանալը զոր

րովհետեւ խիղճը իրեն թող չէր տար մերժել մարդկանց օգնութիւնը զոր իրմէ կը խնդրէին, սակայն համար ալ ուրիշ հնարք մը գտած էր։

Ներքուստ մարմնոյն վրայ՝ սլա-քաւոր երկաթէ գօտի մը կը գործա-ծէր, և երբ քանի մը ունայն մտած-մունք գալու ըլլար, կամ՝ զուարճու-թիւն զգար այնտեղ ուր կը գտնը-ւէր, կամ ասոնց նման բաներ պատա-հէր, արմունկի հարուածներով կը կրկ-նապատկէր սլաքի հարուածոց սաստ-կութիւնը, և այս կ՚ընէր իր պարտա-ւորութիւնը չը մոռնալու համար։ Այս կիրառութիւնը իրեն այնքան օգտա-կար երեւեցաւ, որ մինչեւ իր մահը պահպանեց. և իր կենաց մինչեւ վեր-ջին իսկ վայրկեանը, ուր շարունակեալ ցաւոց մէջ էր, որովհետեւ ոչ գրել և ոչ կարդալ կարող էր, ստիպուած էր դատարկ մնալ և զբօսանքի երթալ։ Շա-րունակ կը փախնար որ անզգամ կեան-քը՝ զինքը իրեն նպատակէն չը հեռա-

ցրէ. Մենք այս ամեն բաները ի-
րեն մահուանէն յետոյ գիտցանք ու
ապշեցանք անձէ մը՝ որուն վրայ մեծ
վստահութիւն ունէր և որուն պար-
տաւորուած էր ըսել ամեն բան պատ-
ճառները բացատրելով։

Այս կնոջ խստութիւնը՝ յառաջ
կու գար այն մեծ սկզբունքէն զոր իրեն
վրայ կը գործադրէր, այսինքն հրաժա-
րիլ ամեն հեշտութիւններէ, որովհե-
տեւ այս սկզբունքի վրայ հիմնուած էր
իրեն կենաց բոլոր կանոնը։ Իւր մե-
նակեցութեան սկզբնաւորութենէն՝ի
վեր միւս սկզբան գործադրութեան
մէջ եւս թերի չէր մնար, որ զինքը կը
ստիպէր բոլոր ունայնութիւններէ հրա-
ժարիլ. վասն զի այնքան ջանադիր էր
բոլոր անօգուտ բաները նուազեցու-
ցանելու, որ կամաց կամաց իրեն սեն-
եկին մէջ օթոց կամ՝ գորգ մ՚ալ չէր
գտնուէր, որովհետեւ կը հաւատար
որ ասիկա կարեւոր բան մը չէր. Նոյն
խոհ-փայլեցութեան հակառակ ստիպուած

չէր ունենալ։ քանզի իւր մտօք մխիթարչն իրեն մտերմիկը կուգային, որոց ձեռ-քով միշտ կը պակսեցնէր իւր սենեկին կահ կարասիքը։ Մինչեւ որ անոնք եր-բեք չէին զարմանար անոր այն տեսակ աղքատներուն վրայ եւ զոր ուրիշներուն եւս յօժարօր կը կարդար ՚ի գործ դնել։

Այս հինգ տարուան անցուցած կեանքը, երեսուն տարեկանէն մինչեւ երեսուն եւ հինգ, անդադար աշխա-տելով ՚ի փառս Աստուծոյ, յօգուտ ըն-կերին եւ իրեն անձին, ջանալով եւս քան-զեւս զինքը կատարելագործել. եւ կարող է մարդ ըսել թէ՝ այս է բոլոր ժամանա-կը որուն մէջ նա ապրեցաւ, որովհե-տեւ միւսներն չորս տարին զոր Աստուած յետոյ իրեն տուաւ, ուրիշ բան չէր՝ բայց եթէ միշտ եւ նեղութիւն։ Ան-ցեալ հիւանդութիւնը նոր պատա-հած հիւանդութիւն չէր, այլ մեծ տկարութեան մը կրկնութիւնն էր, որուն ենթարկուած էր իրեն պատա-նեկութենէն. բայց այս միջոցիս այն-

չափ սաստկացաւ, որ վերջապէս զանի-
կա ընկճեց և բոլոր շրջանիս մէջ նա
մէկ վայրկեան չը կրցաւ աշխատիլ այն
գործին, զոր ձեռնարկած էր կրօնքին
համար, և ոչ օգնել անոնց՝ որոնք ի-
րեն կը դիմէին խորհուրդն ու կարծիքը
հարցանելու, ոչ բերանով և ոչ գրով.
արտաքնապէս իրեն չարչարանքը այնքան
շատ և սաստիկ էր, որ չէր կրնար ա-
նոնց հետաքրքրութիւնը յագեցուցա-
նել, թէպէտ և շատ կը բաղձար:

Իւր հիւանդութեանց այս նորո-
գութիւնը սաստկացաւով մը սկսաւ,
որ անորմէ քուն բռնածդ բոլորովին բար-
ձաւ. իւր մեծ տքնութեանց մէջ գի-
շեր մը աննպատակ մտածութիւն մը
անխոսք առաջարկութեան վրայ միտքը
եկաւ: Այս մտածմունքը ուրիշ մը հե-
տեւեցունելով, և տար ալ դարձեալ
ուրիշ մտածումներ յաջորդելով, այսպէս
մտածութեանց բազմութիւն մը որք
իրարու ետև հետզհետէ յաջորդեցին.
պարզեցին անոր գրեթէ ակամայ այս

ամէն քանդերու խուծումը և պատճառ-
ները, որուն վրայ Ինքը եւս շատ զար-
մացաւ ։ Էջու որովհետեւ երկար ժա-
մանակ կար որ նա իրեն հմտութիւն-
ները շարունակելէն դադարած էր ։
այս պատճառաւ չուզեց որ միայնակ
զանոնք գրէ, այլ պատեհ ժամանա-
կաց մէջ մէկուն պատմելով, որմէ շատ
կ՚ակնածէր, ամենայն յարգանօք և ե-
րախտագիտութեամբ, որով կը պա-
տուէր զայն. այս անձը՝ որ իւր բա-
րեպաշտութեամբ այնքան նշանաւոր
էր որքան իւր մտաց պատուական
ձիրքըն ու ազնուասիրտ ըլլալովը,
կազմեց և յարդարեց մի ծրագիր, որ
միայն Աստուծոյ փառացը կը վերաբե-
րէր. և այս անձը գտաւ յարմար ժա-
մանակ որ զայն գործածեց ինչպէս որ
շինուած էր. և յետոյ զայն տպել տու-
աւ ։ Սակայն թէ՛ գրութիւնը և թէ
տպագրութիւնը կատարուեցաւ շու-
տապաւ ։

Բայց իւր հիւանդութիւնները՝ ա-

տանց զինքը մէկ վայրկեան հանգիստ թողելու, սակայն զինքը նաեւ, ինչպէս որ տարաւ ըսինք, երբեք չաշխատիլ և գրեթէ ոչ ոքի հետ ալ տեսութիւն չէր կրնար ընել: Միթէ հասարակաց և մասնաւորաց ծառայութիւն մատուցանելու արգիլուեցաւ այս տկարութեանը առթիւ, այնու ամենայնիւ երբէք իրեն համար անօգուտ չեղան նոքա, և ինքը այնքան հանդարտութբ և համբերութեամբ տարաւ անոնց. որ կրնանք ըսել թէ Աստուած ինքը այսպէս տնօրինեց և այն վիճակի մէջ դրաւ որով պիտի իրեն ներկայանար, որովհետեւ այս երկար հիւանդութեան միջոցին երբէք անիկա իւր նըպատակէն չը խոտորեցաւ, միշտ իրեն մտքին մէջ ունենալով այն երկու մեծ սկզբունքները, այն է հրաժարիլ բոլոր զուարճութիւններէ և ամեն ունայն բաներէ: Այս սկզբունքները իւր ամենախիստ ցաւին մէջ անգամ մէկ շարունակեալ [illegible]

կը գործադրէր իւր զգայարանաց վերայ, և կը զրկէր զանոնք ամէն հաճելի առարկաներէ, եւ հարկը ստիպած ժամանակ անգամ սքանչելի ճարտարամտութեամբ զանցառութեան կը տար հեշտարար գործքերը։ Օրինակի համար. իւր ցաւերը զինքը փափկութեամբ ապրելու կը ստիպէին, սակայն ինքը մեծ հոգ կը տանէր կերակուրները չը խտրել, և մենք որչափ կ'աշխատէինք աղէկ միս փնտռել իւր ախորժակին բանալու, սակայն օր մը չըսաւ թէ ահա այս լաւ է, և դարձեալ եղանակին յարմար նոր պտուղ կամ ուտելիք մը կը տայինք, եթէ ուտելէն վերջը հարցընէինք թէ ինչպէ՞ս էր, պարզութեամբ մը կը պատասխանէր՝ պէտք էր որ առաջ հարցանէիք, կը խոստովանիմ որ բնաւ չը նկատեցի. և երբ կը պատահէր որ մէկը իրեն ներկայութեանը ինչ և իցէ մսի մը աղէկութեանը համար զարմանք կը ցուցնէր, չը կրնալով անոր համբերել և կամ լռել, մարմնա-

տէր կը կոչէր զանիկայ. Թէպէտ և անոնք սովորական բաներ են, բայց նա կ՚ըսէր թէ՝ ասիկա մէկ նշան է որ մարդիկ կերակուր կ՚ուտեն իրենց քիմքը գոհացնելու, որ միշտ վատութի̄ համարուած է։ Ու այս բանին մէջ չխնալու համար, թող չէր տար որ իր կերակուրը համեմներով պատրաստեն, և կամ նարընջով կամ ազոխաջրով որ կըրնար իր ախորժակը գրգռել. Թէպէտ և բնականապէս այս ամեն բաները կը սիրէր։

Այս կանոնաւորեալ սահմաններուն մէջ ինքզինքը հաստատելու համար, իրեն առանձնութեան սկզբնաւորութենէ ՚ի վեր զգուշացած էր ստամոքսի կողմէն, և ուտելու բաները կանոնի տակ դրած էր, այնպէս որ, ինչ ախորժակ որ ունենար՝ երբէք կանոնէ չէր ելնէր, և ինչ բանի որ ախորժակ չունէր՝ անկէց ևս պէտք էր որ ուտէր. և երբ իրեն անոր պատճառը կը հարցունէին թէ ինչո՞ւ ինքզինքը կը ստի-

պէր այսպէս , կը պատասխանէր , որ այս ստամոքսի անհրաժեշտ պիտոյքն է որ պէտք է տրուի և ոչ թէ ստամոքսը հաճեցնելու է ։

Իւր զգայարանքները կը ճնշէր ոչ թէ միայն անոնց հաճոյ եղած բանե- րէն զրկելով , այլ և անհաճոյ եղածնե- րը չը մերժելով , ինչպէս էին թէ՛ կե- րակուրներ և թէ դեղեր ։ Չորս տա- րի այսպէս իւր հաշմութեան մէջ ան- ցունելով , երբէք ամենափոքր տժգո- հութիւն մը ցոյց չը տուաւ կերակու- րի մասին . և իրեն առողջութեան հա- մար ինչ դժուար բան որ առաջարկէ- ին , առանց դժուարութեան կը կա- տարէր . իսկ երբ ես ասոր զարմանք կը ցուցնէի , զիս ծաղր ընելով կ՛ըսէր՝ թէ չեմ իմանար մարդ ինչպէ՞ս կրնայ հակառակ կամք ցոյց տալ , մինչդեռ դեղը կամաւ կ՛ընդունի , և կամքը ո՞ւր կը մնայ եթէ բռնադատուած ընէ այս գործը ։ Այս եղանակաւ ահա շա- րունակ կ՛աշխատէր ճնշել ինքզինքը ։



Աղքատութիւնը այնքան շատ կը սիրէր, որ շարունակ կարծես թէ իրեն աչքին առջեւն էր, այնպէս որ երբ գործի մը ձեռք զարնել կ'ուզէր, կամ թէ մէկը իրեն խորհուրդ մը հարցունելու ըլլար, առաջին մտածմունքը այս էր՝ որ իրեն միտքը կուգար, տեսնել թէ աղքատութիւնը կրնա՞ր 'ի գործ դրուիլ։ Այն ամեն խորհուրդներէն, զորս շատ կը յեղյեղէր իւր մտքին մէջ, մին այս էր որ՝ կ'ուզէր ամեն բանի մէջ երեւելի հանդիսանալ, օրինակի համար ընտիր արհեստաւորաց բոլոր ձեռագործները գործ դնել, և այլ ասոնց նման ուրիշ բաներ։ Ու դարձեալ շատ դժկամակութիւն ցոյց կուտար որ մարդիկ ամեն բարեկեցութիւն կ'որոնեն. զոր օրինակ ամե՛ն բան կ'ուզեն ունենալ, և ուրիշ հազարաւոր բաներ կ'ընեն առանց մըտածելու որ շատ չարիքներ կրնան պատահիլ։ Բայց ինքը այսպէս չէր դատեր, ինքը մեզ շարունակ կ'ըսէր

որ , չըկայ բնաւ աղքատութեան ո-
գին չխջուցանելու կարող բան , որքան
դիւրակեցութեան հետաքրքիր խու-
զարկութիւնը , այն բաղձանքը՝ որով
կը փափաքին միշտ ունենալ լաւն և
գեղեցիկն . և մեզ կ'ըսէր որ արհես-
տականներուն համար՝ պէտք է որ
շարունակ աղքատ և ամենէն բարի
մարդիկը ընտրեն , և ոչ թէ վայելչասէր-
ները որոնք երբէք չեն կրնար օգտակար
ըլլալ ։ Երբեմն կ'աղաղակէր . « Եթէ
ես մտացս չափ աղքատ սիրտ մը ու-
նենայի , շատ երջանիկ կ'ըլլայի , վասն
զի համոզուած եմ բոլորովին , որ աղ-
քատութիւնը մեծ միջոց մ'է երջան-
կութեան հասնելու համար »։ Այս սէ-
րը՝ զոր ունէր առ աղքատութիւնն ,
զինքը կը ստիպէր այնքան գորովանօք
սիրել աղքատները , որ երբէք ողոր-
մութիւնը չէր մերժեր . թէպէտ և ի-
րեն հարկաւորէն միայն կ'ընէր , թէ՛
քիչ հարստութիւն ունենալէն և թէ՛
այնպիսի ծախք մը ընելու ստիպուե-

լէն, որ իրեն հիւանդութեանց պատճառաւ՝ իրեն եկամուտէն կ՚անցընէր ։ Երբ նշանաւոր ողորմութիւն մը ըրած ատենը այս յիշեցունել կ՚ուզէինք, սրդողելով մը կ՚ըսէր. « Ես գիտեմ՝ որ ո՛ր և իցէ աղքատ մը մեռնելու ատեն բան մը կը թողու »։ Այսպէս բերան կը գոցէր. և երբեմն այնքան սկսաւ տալ, որ ստիպուեցաւ դըրամ փոխ առնուլ, իրեն ամեն գոյքը աղքատաց ընելու համար, չուզելով այլ և ս իրեն բարեկամները թախանձել.

Երբոր կառքերու անօրէնութիւն եղաւ, ինձ ըսաւ որ վարձակալներէն՝ (որոնց հետ կը սակարկուէր, թէ որ կարելի է միասին բնակին, որովհետեւ իրեն ծանօթներն էին), կանխաւ 1000 Ֆրանք կ՚ուզեմ պահանջել Պլուլայի աղքատներուն ղրկելու համար ։ Եւ երբոր ես իրեն ըսի որ, դեռ այս գործոյն համար ապահովութիւն մը չի կայ, պէտք է ուրիշ տարուան մը ըսպասել, անմիջապէս այս պատասխանը

տուաւ. ինձ թէ, “Ես այս բանիս մէջ անպատեհութիւն մը չեմ տեսներ. եթէ անոնք կորսնցնեն, իմ ըս-տացուածքէս կը հատուցանեմ. և թէ չեմ կրնար տարի մ՝ ալ համբերելու. ուրովհետեւ շատ ստիպողական կարօտութիւն մ՝ էր, և չէր կրնար յետաձգուիլ: Եւ որովհետեւ մարդիկ չը կամեցան միասին բնակիլ, այս պատճառաւ չը կարաց 'ի գործ դնել իւր մտաց այս որոշումը, որով մեզ տեսնել կուտար այն ճշմարտութիւնը՝ զոր այնքան մեզ կը կրկնէր, թէ ինքը թշուառաց ձեռնտուութիւն ընելու համար միայն կը փափաքէր հարստութիւն ունենալ. որովհետեւ միևնոյն ժամանակ որ Աստուած յոյս մը կուտար իրեն բան մը ձեռք բերելու, տակաւին նոյն իսկ անոր վրայ ապահովութիւն չունեցած, կանխաւ կըսկըսէր զայն բաշխել:

Իւր ողորմածութիւնը՝ զոր ունէր առ աղքատս, միշտ զօրաւոր մնաց.

բայց մանաւանդ այնքան կրկնապատ-
կեցաւ իւր կենաց վերջերը, որ ա-
ռանց անոր վրայ շարունակ իրեն հետ
խօսակցելու չէր կրնար զինքը գոհ ընել։
Չորս տարիէն 'ի վեր մեծ զգուշու-
թեամբ զիս կը քաջալերէր աղքատաց
ծառայութեանը նուիրելու ինքզինքս
և հոն առաջնորդել իմ զաւակներս։

Եւ երբ իրեն կ'ըսէի թէ, « Կը
վախնամ որ ասիկայ յետոյ զիս ընտա-
նեացս խնամքներէն կը խոտորցունէ »,
ինծի կը պատասխանէր թէ՝ անիկայ հա-
ստատուն կամաց պակասութենէն յա-
ռաջ կուգայ, և թէ զանազան եղա-
նակաւ կրնայ մարդ այս առաքինու-
թիւնը գործ դնել, այնպէս որ մարդ
առանց իւր ընտանեկան գործոց փոք-
րիկ վնաս մը հասցունելու, կրնայ ար-
ժանաւորապէս իւր կարողութեանցը
համեմատ ողորմութիւն ընել։

Նաև կ'ըսէր որ Քրիստոնէից ընդ-
հանուր կոչումն է ասիկայ, և թէ
մանաւանդ գատողութեան հարկ չէ-

կայ գիտնալու թէ արդեօք մարդիկ գէթ 'ի այն կոչուա՞ծ են. վասն զի այս ստոյգ է որ Քրիստոս մեր Փրկիչը ա- սով զաշխարհ պիտի դատէ. և թէ մարդ մտածէր որ միայն այս առաքի- նութեան զանցառութիւնը մեր դա- տապարտութեանը պատճառ կ'ըլլայ. այս մտածութիւնը միայն՝ եթէ հա- ւատք ունենայինք, բաւական էր զմեզ ամեն բանէ կողոպտելու աստիճանին հասցնել: Դարձեալ մեզ կ'ըսէր թէ՝ «Աղքատաց մօտ յաճախելը անհուն օ- գուտներ ունի, տեսնելով այն թշուա- ռութիւնները որոց ենթարկուած են նոքա, և նոյն իսկ իրենց հիւանդու- թեանց սաստկութեան մէջ ամենակա- րեւոր հարկաւորութենէ զուրկ. ա- հա այս ամենը տեսնալէն յետոյ անըզ- գայ պէտք է ըլլայ մարդ, որ ինքզին- քը չը զրկէ անօգուտ հաճոյքներէ, վայելքներէ և աւելորդ հոգերէ»:

Այս խօսքերը այնքան կը գրգռէր զմեզ որ երբեմն կ'առաջարկէինք հա-

տարակաց չքաւորութիւնը կամ կարօտութիւնը լեցունելու համար ընդհանուր օրէնք կամ կանոններ շինել մէջերնիս, սակայն եղբայրս ասոր հաւանութիւն չէր տար, ըսելով թէ մեք մասնաւորի կոչուած էինք, և ոչ թէ ընդհանուրի. և թէ՝ ինքը այնպէս կը հաւատար որ Աստուծոյ առաւել հաճելի է աղքատաց ծառայութիւն մատուցանել աղքատօրէն, այսինքն իւրաքանչիւր մարդ իւր կարողութեան համեմատ, առանց ինքզինքը այն մեծամեծ նպատակներուն ոգւով ներկայացնելու, որն որ այն աւելազանցութենէն յառաջ կուգայ, որուն հետազօտութիւնը ըստ ամենայնի կը պարսաւէր. Այսպէս խօսելով ո՛չ թէ բրեն միայն այն էր որ հասարակաց համար աղքատանոցներ հաստատելը վնասակար է, ընդ հակառակն ասոր համար մեծ սէր ունէր, ինչպէս տեսնուեցաւ իրեն ըրած կտակէն. այլ կ՚ըսէր թէ այնպիսի մեծամեծ ձեռնար-

կութիւնները քանի մը անձանց յառաջացեալ էր, զորս Աստուած գրեթէ աներեւութապէս դէպ 'ի այն կ'առաջնորդէ, և ոչ թէ ամեն մարդկան՝ ինչպէս հանապազօրեայ և մանաւոր օգուտները որք կ'ըլլան աղքատաց:

Ահաւասիկ մէկ մասն է ասիկայ այն կրթական դասերուն, զոր մեզ կ'աւանդէր այս առաքինութեան գործադրութեան հրաւիրելու համար, առաքինութեան՝ որ իւր սրտին մէջ մեծ տեղի մը ունէր. և այս փոքր օրինակ մ'էր, որ մեզ տեսնել տուաւ իւր մարդասիրութեան մեծութիւնը: Իւր սրբութիւնը կամ անմեղութիւնըն ալ փոքր բան մը չէր. և այնքան կը յարգէր այս առաքինութիւնը, որ կըզգուշանար շարունակ թէ չըլլայ որ կամ իրեն մէջ և կամ ուրիշներուն միբաւորի այն. և անհաւատալի է իրեն այս նպատակին համար ունեցած ճըշդութիւնը. Ասոր վրայ նոյն իսկ ես վախի մէջ էի, որովհետեւ ամեն խօ-

տածներս կը ստգտանէր զորս ես անմեղ կը կարծէի, և որոց սխալ ըլլալը յետոյ ինձ կը ցուցընէր։ Եթէ պատահմամբ երբեմն ըսէի թէ այսօր գեղեցիկ կին մը տեսայ, բարկանալով կ՚ըսէր ինձ թէ՝ պէտք չէր երբէք սպասաւորաց և երիտասարդ անձանց առջև այդպիսի խօսքեր ընել, իսկ ես չէի իմանար թէ ասով ինչ մտածութիւն կրնայի գրգռել անոնց մէջ։ Կը դժգոհէր նա դարձեալ այն գրգանաց համար, զոր իմ զաւակներէս կ՚ընդունէի, և կ՚ըսէր որ ասիկայ անոնց վնասակար ըլլալէ զատ օգուտ չունի, և թէ մարդ կրնայ ուրիշ հազար տեսակ միջոցներով սէր ցոյց տալ իւր զաւակաց, ուստի զիս կը յորդորէր որ այս սովորութիւնը ջնջեմ։ Ասոնք են ահա այն բարձր դասերը զորս ինձ կուտար, և ահա այսքան արթուն կը հսկէր անմեղութեան վրայ թէ՛ իրեն և թէ ուրիշներուն մէջ։

Ողջօրս մահէն երեք ամիս գրեթէ առաջ իրեն դէպք մը պատահեցաւ, որ

անոր ամենազգալի ապացոյցն եղաւ, և միևնոյն ժամանակ եղբօրս սքանչելի ողորմածութեան մեծութիւնը տեսնուեցաւ։ Երբ եղբայրս պատարագէն կը վերադառնայր, տասն ու հինգ տարեկան խիստ գեղեցիկ օրիորդ մը իւր մօտ եկաւ ողորմութիւն խնդրելու, այսպիսի սրտաշարժ տեսարանէ մը եղբօրս սիրտը շարժեցաւ տեսնելով այս աղքատուհւոյն այսպիսի վտանգի մը ենթարկուիլը. յետոյ հարցուց անոր ով ըլլալը, և այն ստիպողական պատճառը, որով ողորմութիւն խնդրելու եկած էր. և երբ իմացաւ որ նա գեղը կը բնակի եղեր, իւր հայրը մեռեր է և թէ մայրն ալ հիւանդանալով այն օրը եկեղեցւոյ հիւանդատունը տարուեր է, հաւատաց որ Աստուած էր որ զասիկայ իրեն առաջին կարօտութեան մէջ իւր մօտ ղրկած էր անոր օգնութիւն մը ընելու. և նոյն ժամէն անմիջապէս տարաւ օրիորդը գիշերօթիկ վարժարան, ուր բարի քահանայի

մը յանձնելով, և որքան որ պէտք էր
արծաթ տալով աղաչեց անոր խնամ
տանել, և դնել զայն ապահով վիճա-
կի մը մէջ, ուր կրթուի օրինաւորա-
պէս իւր երիտասարդութեան պատ-
ճառաւ։ Այս բոլոր հոգը քահանային
վրայ չէ թողլու համար, ըսաւ անոր որ
վաղը առաւօտ քեզ կին մը կը ղրկեմ,
որբին հագուստները գնելու և հոգա-
լու իրեն հետ այն ամեն կարեւոր բա-
ները, որով օրհորդը այնպիսի վիճակի
մէջ մտնէ, որ կարողանայ ծառայել
վերակացուհւոյ մը։ Առաւօտեան ղըր-
կեց եղբայրս կին մը որ այս բարի քա-
հանային հետ աշխատելով և անոր
հագուելիք բաները շտկելով զինքը օ-
րինաւոր և վայելուչ վիճակի մը մէջ
դրին։ Այս եկեղեցականը՝ կնոջմէն
այս մարդասիրութիւնը ընողին անու-
նը հարցնելով, կինը անոր ըսաւ՝ որ
հրաման չունէր յայտնելու, միայն թէ
երբեմն երբեմն պիտի գար ինքը օրի-
որդին պիտոյից հոգացողութեանը

մասնակցելու, որով քահանային հետա-
քրքրութիւնը աւելցաւ. Նա աղաչեց
կնոջը, որ անոր անունը իրեն ըսելու
շնորհք ընէ. «Այս ձեզ խօսք կուտամ
կ'ըսէր քահանային, թէ քանի որ այն
մարդը կենդանի է՝ այս իրողութիւնը
չեմ յայտներ, և եթէ Աստուծոյ տնօ-
րինութեամբը ինձմէ առաջ նա մեռ-
նի, պիտի ունենամ այսպիսի գեղեցիկ
գործ մը հրապարակելու մխիթարու-
թիւնը. ես չեմ ուզեր որ այս գործը
մոռացութեան դատապարտուի»: Այս-
պէս ահա այս դիպուածովը այն բարի
քահանային առանց եղբայրս ճանաչե-
լու կը տեսնէր թէ որչափ հիանալի է
անոր մարդասիրութիւնը և անձնուիրու-
թեան համար ունեցած սէրը:

Եղբայրս շատ գործով և սէր կը ցու-
ցընէր նաև մեզ, սակայն չափազանց
չէր այս, և այս աւելի յայտնի ըրաւ
քրոջս մահուամբը, որ տասն ամիս իր
մահուանէն յառաջեց. երբ այս լուրը
լսեց եղբայրս՝ միայն այս խօսքերը ը-

տաւ. «Թող Աստուած այնպիսի բարի մահուամբ կոչէ զմեզ առ ինքն»: Եւ այսպէս միշտ հլու և հնազանդ էր Աստուծոյ Նախախնամութեան օրէնքներուն, և միայն կը խորհրդածէր այն մեծամեծ շնորհաց վրայ, որով Աստուած ճոխացուցած էր քոյրս իր կենդանութեան ժամանակ, և յայտնի պարագաներով փայլեցաւ մահուան միջոցին։ Ասոր համար էր որ անդադար կը կրկնէր. «Երանի անոնց, որոնք ՚ի Տէր կը ննջեն»: Եւ երբոր զիս այս կորստեան համար սաստիկ ցաւոց մէջ կը տեսնէր շարունակ, կը բարկանար և կ՚ըսէր որ պէտք չէ երբէք արդարոց մահուան համար այսպիսի զգացումներ ունենալ, և մանաւանդ պարտաւոր ենք զԱստուած փառաբանել այս մասին, որ այնքան վարձատրած էր քոյրս իր մատուցած փոքրիկ ծառայութեանց փոխարէն.

Եղբայրս մեզ ցոյց կուտար այսպէս, որ ինքը՝ ոչ մէկուն հետ անքակ-

տեղի կապ մը չունի, Թէպէտ և իւր
սիրելիներն ըլլան, ինչպէս էր քոյրս, զոր
աշխարհիս վրայ ամենէն շատ կը սիրէր։
Բայց այս չափուած գոհ չէր ըլլար,
այլ ինքը չունենալէն զկնի, չէր ուզեր
ամենուն որ մէկը այդպիսի չափա-
զանց սիրոյ կապ մը դէպ 'ի իւր անձը
ցուցընէ։ Խօսքս այն մեղանչական և
փտանգաւոր կապերուն վրայ չէ, ո-
րովհետեւ այս՝ աշխարհ ամենայն յայտ-
նապէս կը տեսնէ, այլ՝ ամենէն անմեղ
բարեկամական միութն՝ զոր և կանոնա-
ւորապէս ունել կը բաղձար, որպէս զի
տուիթ մը չը տայ այդ մասին, և մա-
նաւանդ արգիլէ. և որովհետեւ չէի
իմանար ես թէ ինչ միտք ունի ասի-
կայ, ուստի բոլորովին զարմացած էի
այն քանի մը ինձ ըրած մերժմանց վը-
րայ, որոնց համար գանգատանօք կ՚ըսէ-
ի թէ՝ «Եղբայրս զիս չը սիրեր և կարծես
թէ իրեն ձանձրութիւն կը պատճա-
ռեմ նոյն իսկ այն ժամանակ՝ երբ իւր
հիւանդութեան մէջ իմ սիրայօժար

ճութեամբ բրած ըլլան. կը խաբեմ այն անձինքը՝ որոնց մէջ այս խիղճը կը ծնուցանեմ, որովհետեւ ես ոչ մէկու վախճանը չեմ, և չեմ կրնար զանիկայ գոհացնել կամ փոխարէնը հատուցանել։ Միթէ ես մահկանացու չե՞մ՝ ասով իրենց յարելու առարկան կը մեռնի ուրեմն։ Որքան յանցաւոր կ՚ըլլայի այս ստութիւնը հաւատացնելուս համար, թէպէտ քաղցր համոզումներով, այնպէս որ ամեն մարդ ուրախութեամբ ընդունելով զայն՝ ինձ ալ ասով բերկրութիւն պատճառէին։ Նոյնպէս յանցաւոր եմ, եթէ ես զիս սիրել տալու ջանամ և յանկուցանեմ մարդկան սըրտերը գալ ինձ յարելու։ Ես պարտաւոր եմ զգուշացնել ամեն անոնք՝ որոնք պատրաստ են հաւանելու այս ստութեանը, թէ պէտք չէ անոր հաւատան, ինչ օգուտ ալ որ գայ ինձ անկից։ Եւ նմանապէս պարտաւոր չեն ինձ յարիլ, որովհետեւ իրենց բոլոր կեանքը և տքնութիւնները պիտի ըլ-

լան հաճոյանալ Աստուծոյ և զայն ո-
րոնելը։

Ահա տես ինչ եղանակաւ կը կըր-
թէր ինքզինքը և ինչպէս գործադիր
կը հանդիսանար այս կրթութեան, ո-
րուն ես անտեղեակ ըլլալով, խաբ-
ուած էի ինքնին չարաչար։ Ահա իւր
կիրառութեանց այս ցոյցերէն կամ
նշանակներէն՝ որոց դիպուածով միայն
ծանօթացանք, կը տեսնուի իւր վրայ այն
հազուագիւտ ձիրք և շնորհաց մէկ
մասը, զոր Աստուած քրիստոնէական
կենաց կատարելութեան համար ա-
նոր կը տար։

Եղբայրս՝ Աստուածային փառաց
այնպիսի մեծ նախանձաւորութիւն մը
ունէր, որ չէր կրնար զսպել իւր ար-
դարացի բարկութիւնը ամեն անոնց
դէմ, որոնք զայն աղարտելու կը ժպըր-
հէին, ով որ ալ ըլլար։ Այս էր որ իր
եռանդը կը բազմապատկէր Թագաւո-
րին եւս ծառայելու, որ դէմ կը դը-
նէր ամենուն Փարիզի խռովութեան

Ներքեւու Թագաւորս Աստուծոյ հրամանին դէմ դնելու ։ Եւ ահա այսպէս մարդկանց այս սովորանքը այնչափ մեծ է, զոր բանիւ յայտնելու չէ կար, վասն զի ասիկայ միշտ ընկերակցած է քաղաքական պատերազմի, որ մարդկանց իրենց մերձաւորաց մարդասիրութեան դէմ մեղանչելու նողկալի և ամենամեծ տեսակն է ։ Ազգայրս այնքան անկեղծութեամբ այս սկզբան կը հետեւէր, որ այն ժամանակին՝ անոր մէջ Թերի չը գտնուելու համար, մեծ եւ անթիւ շահեր զոհեց։ Սովորաբար կ'ըսէր որ. « Ես այնքան հեռի եմ այս յանցանքէն, որքան մարդասպանութենէ և կամ ապականութենէ»։ Վերջապէս ոչ ինչ իրեն բնութեան աւելի հակառակ չէր, որքան ասիկայ ։

Անոնք են զգացումները զորս ունէր առ Թագաւորն, և անոնց մէջ Թերի գտնուողներուն դէմ ալ անհաշտ էր, և այս՝ իրեն բնական բան մը չէր և ոչ խօլ սիրոյ ազդեցութեան մը

յառաջ կուգար, որովհետև զարմա-
նալի քաղցրութիւն մը ունէր առ ամե-
նայն մարդիկ, որոնք մասնաւորապէս
իրեն անձին դէմ կը մեղանչէին։ Այն-
պէս որ երբէք խորուն չէր ըներ անոնց
և միւսներուն մէջ, և շուտ մը բոլորովին
կը մոռնար այն ամէն թշնամանքները,
որ իրեն դէմ եղած էին, մինչև ան-
գամ եթէ զայն իրեն յիշեցնել հարկ ըլ-
լար, բաւական աշխատութիւն և թէ
անոնց ամէն պարագաները խօսիլ
պէտք էր։ Ու երբ անոր վրայ կը զար-
մանայինք երբեմն, կ՚ըսէր մեզ թէ՝
«Ին զարմանաք անոր երբէք. ասիկայ
առ երեսս բան մը չէ. այլ իրական
մոռացութիւն, որովհետև ամենևին
չեմ յիշեր»։ Ու յիրաւի կը նշմարէ-
ինք որ երբէք տպաւորութիւն չէր ը-
ներ իւր վրայ որ և իցէ նախատինք և
զրկողութիւն, որն որ իրեն անձին
դէմ եղած էր, վասն զի զանոնք շատ
դիւրութեամբ կը մոռնար, մինչդեռ
ինքը այնպիսի զօրաւոր յիշողութիւն

ունէր, որ շատ ժամանակ ըսած էր մեզ թէ՝ ոչ ինչ չեմ մոռանար այն ամեն բաներէն, զորս միտքս պահելու դիտաւորութիւն կ՚ունենամ։

Այս քաղցրութիւնը պահեց մինչեւ վերջը, վասն զի իւր մահէն քիչ ժամանակ յառաջ թշնամանք մը կրեց մէկ բանի մասին, որուն մէջ իր սիրտը շատ զգայուն էր, և այս ալ այնպիսի անձէ մը՝ որ մեծ երախտիքներ ընդունած էր իրմէ, և միևնոյն ժամանակ մէկ ծառայութիւն ալ ըրած էր իրեն այս անձը, որուն շնորհակալ եղաւ այնքան մեծարանօք և քաղաքավարութեամբ որ չափազանց էր, թէպէտ այս մոռացութիւն չէր, որովհետև մի և նոյն ժամանակի մէջ եղաւ՝ բայց և այնպէս այս ապացոյց մ՚էր, որ եղբայրըս իրեն անձին դէմ եղած զրկանաց երբէք վրէժխնդրութիւն չունենալէ զկնի, ներողութիւնը կատարեալ էր։ Բոլոր այս ձիրքերը՝ զոր մանրամասնաբար կը թուարկեմ, համառօտիւ կը

տեսնաւքին աւելի պայծառ. այն Նկարա-գրութեան մէջ զոր ինքնին յօրինեց փոքրիկ Թղթի մը վրայ, զոր արժան է յառաջ բերել:

« Կը սիրեմ ազատութիւնը՝ որով-Հետեւ Յիսուս Քրիստոս սիրեց: Կը սիրեմ ամէն բարութիւններ կամ Հա-րստութիւններ, փասն զի անոնք Թըշ-ուառաց օժանդակելու մէկ մէկ մի-ջոցներ են: Կը պաՀպանեմ Հաւատար-մութիւն առ ամենայն մարդիկ: Ըն-քէք չարին չար չեմ Հատուցաներ, այլ կը մաղթեմ անոնց Համար իմ ունե-ցածիս նման վիճակ մը, ուր չեն ըն-դունիր չար, եւ ոչ բարի մարդկանց մեծ մասէն: Կը ջանամ միշտ ըլլալ ան-կեղծ, ճշմարտախօսէր եւ Հաւատարիմ դէպ 'ի ամէն մարդիկ: Ես սրտի գո-րով մը ունիմ ամէն անոնց Համար զոր Աստուած ինձ Հետ սերտ միացուց, Թէ առանձին եւ Թէ 'ի Հրապարակի իմ բո-լոր գործոցս մէջ Աստուծոյ ներկայու-Թիւնը կը Հաւատամ ունենալ, որ պի-

տի դառնալ զանոնք, և որոնց բոլորն ալ արդէն անոր նուիրած եմ։ Ահաւասիկ բոլոր զգացումներս. և ես իմ կենաց ամէն օրուան մէջ կ'օրհնեմ իմ Փրկիչս՝ որ այս ամենը ինձ տուաւ, և որ տկարութիւն թշուառութիւն, ցանկութեամբ, հպարտութեամբ և փառասիրութեամբ լեցուն մարդէն կազմեց մարդ մը, որ ազատ է այս ամեն չարիքներէն՝ այն շնորհաց զօրութեամբ, որուն պարտական եմ ամենայն ինչ. զի ինքնիրմէս չունիմ՝ բայց միայն աղէտք և սոսկումն»։

Այսպէս նա անձամբ ինքն իրեն նըկարագիրը բռնած էր, որպէս զի շարունակ իրեն աչաց առջեւ այն շաւիղը տեսնելով որով Աստուած զինքը կ'առաջնորդէր, չը կարողանայ երբէք անկէց խոտորիլ։ Այնչափ արտաքոյ կարգի ձիրքերը միանալով իրեն մտքի մեծութեանը հետ, չը զօրեցին ևս արգելք ըլլալ անոր այն սքանչելի պարզասիրութեանը՝ որ նորա կենաց բոլոր մնացորդին մէջ փայլելով, զանի-

կա գործադիր կը հանդիսանայր մեծաւ ճշդութեամբ այն ամեն պարտաւորութեանց որք կրօնի կը հային ։ Սաստիկ սէր մը ունէր նաև առ Աստուածային պաշտամունս, մանաւանդ Դաւթի նուագները՝ որոց մէջ զարմանալի բաներ կը գտնար, իրեն բոլոր ուշը դրաւած էին, այնպէս որ բերկրութիւն մը կը զգար զանոնք կըրկնելով, մանաւանդ 48 գլխոյն փոքրիկ սրտաշարժ տուները ։ Երբ նա իւր բարեկամաց հետ Սաղմոսի գեղեցկութեան վրայ կը խօսէր, այնպէս կը յափշտակուէր մտօք, մինչեւ խելայեղ երեւիլ դիմացիններուն. և այս մտախոհութիւնը զինքը զգայուն դարձուցած էր դէպ 'ի այն ամեն բաները, որոնցմով մարդ կը ջանայ զԱստուած պատուել, որոնց և ոչ մէկուն մէջ թերի գտնուած չէր եղբայրս ։

Երբոր իրեն ամեն ամիս հրամանագիր կը ղրկուէր, ինչպէս շատ տեղեր սովորութիւն է կ'ընեն, զարմա-

նալը յարգանօք մը կ՚ընդունէր զանոնք, և ամէն օր անոնց վճիռը կը պատմէր։ Իսկ իրեն կենաց վերջին չորս տարիներուն մէջ, որովհետև կարողութիւն չունէր աշխատելու, ուստի միակ զբօսանքն էր այցելութիւն ընել Եկեղեցեաց, ուր կային որբոց մասունքներ դուրս հանուած և կամ որ և իցէ հանդէս, և սոր համար տօնացոյց մը ևս ունէր, որով անդեպը տեղեակ կ՚ըլլար, ուր մասնաւոր ջերմեռանդն Աստուածպաշտութիւն կը տեսնէր. և այս ամէնը այնպիսի բարեպաշտութեամբ կը կատարէր, որ ամէն տեսնողները կը հիանային. Եւ այս եղաւ առիթ այն ընտիր խօսքին՝ զոր առաքինի և լուսաւորեալ անձ մը ըսաւ. „ Աստուածային շնորհքը փոքրիկ բաներու միջոցաւ մեծ մոքերու մէջ կը յայտնուի. իսկ մեծամեծ բաներու միջոցաւ հասարակ մտաց մէջ”։

Այս մեծ պարզմտութիւնը մանաւանդ այն ատեն կը յայտնուէր, երբ

մարդիկ իրեն հետ Նաւուծոյ վրայ՝ կը խօսէին, և կամ ինքնին խօսք կը բանար անոր վրայ, այնպէս որ նոյն իսկ մահուան ժամանակներուն մէջ գիտնական և առաքինի կղերական մը՝ որ իրեն խնդրանաց համեմատ զինքը տեսնելու եկած էր, մէկ ժամ ամբողջ իրեն մօտ կենալէն զկնի այնպիսի հաճութեամբ մը անկից ելաւ, որ ինծ ըսաւ. «Գնացէք, մխիթարուեցէք, եթէ Տէրը զինքը կը կոչէ, դուք շատ առիթ կամ նիւթ ունիք գովելու այն շնորհքները՝ զորս անոր տուաւ: Ես միշտ անոր մեծամեծ ձրից վրայ զարմանքս յայտներ եմ, սակայն երբէք անոր այն մեծ պարզամտութիւնը եւ յստակութիւնը չէի նշմարած՝ բայց եթէ հիմա. ասիկա անհամեմատ ձիրք մ՚է այնպիսի մտքի տէր եղող անձի մը վրայ, ինչպէս որ ինքն է, ուստի ամենայն յօժարութեամբ կ՚ուզէի իրեն տեղը ըլլալ»:

Սրբոյն Ստեփաննոսի ժողովրդա-

պէտք՝ որ երբեմն հիւանդութեան ա-
տեն ունեցած էր արդէն անոր վրայ մի
և նոյն բանը, ուստի ամեն ժամանակ
համարձակ կ'ըսէր՝ թէ մանուկ մ'է
ասիկա, խոնարհ է և մանկան մը հը-
նազանդութիւնը ունի, Այս պարզ-
մտութիւնն է որ անոր ամենայն ազա-
տութեամբ իրեն սխալանքները յան-
ցանքները խոստովանիլ կու տայ, և
առանց ընդդիմութեան կ'ընդունի
այն խրատները՝ զոր իրեն կու տան:
Եղբօրս մնաց անհնարին աշխուժու-
թիւնը՝ երբեմն զինքը այնպէս անհամ-
բեր կը դարձունէր որ զանփոյթ հա-
ճելու համար բաւական աշխատու-
թիւն կը քաշէինք. բայց երբ իրեն կը
զեկուցանէինք կամ ինքնին կը նշմարէր
թէ իրեն անհամբերութեամբ մէկը
զայրացուցած էր, անմիջապէս անոր
առաջը կ'առնէր իւր այնպիսի քաղցր
կենակցութեամբը և այնպիսի բարե-
բարութեամբ, որ երբէք այս պատճա-
ռաւ մէկուն բարեկամութիւնը չըկորս

տինցուց։ Այր ջանամ համառօտել, վա-
տնդի ամեն մէկ պատահման ամեն պա-
րագաները չեմ ուզեր մանրամասն նը-
կարագրել. ուստի կըսկսիմ անհա պատ-
մել նորա վերջին հիւանդութիւնը։

Այս՝ անհնարին անախորժութիւն
մը սկսաւ իւր մահէն երկու ամիս յա-
ռաջ. իւր բժիշկը խորհուրդ տուաւ
իրեն դժուարամարս բաներ չուտել,
և ներսի դին յստակել կամ մաքրել.
այս վիճակին մէջ եղած ատեն նշա-
նաւոր գործ մը գործեց, որ դարձեալ
իւր ընկերասիրութեան արդիւնքն էր։
Բարի մարդ մը իւր բոլոր ընտանիքո-
վը եղբօրմէս յօժարակամ տրուած
տան մէկ սենեկին մէջ կը բնակէր, ո-
րուն կուտար նաեւ փայտ և ուրիշ
բաներ միմիայն ողորմածութենէ շար-
ժեալ, վասն զի անորմէ և ոչ իսկ ծա-
ռայութիւն մը կը պահանջէր, այլ մի-
այն տան մէջ միայնակ չը մնալու հա-
մար։ Այս մարդը որդի մը ունէր, որ
այն ժամանակին հիւանդացած էր ծա-

ղկի ախտով. եղբայրս՝ որ իմ ծառա-
յութեանցս հարկաւորութիւնը կըզ-
գար, սկսաւ վախնալ որ չըլլայ թէ իմ
զաւակացս համար՝ հոն երթալու եր-
կիւղ մը կրեմ եւ սրտիս մէջ: Այս մը-
տածութիւնը զինքը ստիպեց հիւան-
դէն բաժնուիլ. բայց որովհետեւ կ'եր-
կնչէր նաեւ որ գուցէ այս բնակու-
թեան փոփոխութիւնը վտանգաւոր
ըլլայ անոր, ուստի լաւ համարեց որ ին-
քը փոխադրուի մեր տունը, ըսելով
թէ «Ինծ պակաս վտանգ կայ այս փո-
խադրութեան մէջ, ատոր համար ինծ
պէտք է ձգել տունս»: Այսպէս յու-
նիս 29 ին մեր տունը փոխադրեցաւ
իւր տնէն, ուր վերստին չը մտաւ եր-
բէք. վասն զի երեք օրէն յետոյ սաս-
տիկ խիթ մը վրայ գալով, բոլորովին
քուն ըսածդ բարձաւ իրմէ. բայց ո-
րովհետեւ մտքի կորովութիւն եւ եւս
մեծ քաջութիւն մը ունէր, ուստի
իւր անհնարին ցաւերուն կը դիմա-
նար զարմանալի համբերութեամբ:

Ներքէք չէր թողուր որ մէկը փոքրիկ ծառայութիւն մը իրեն մատուցանէ, ինչպէս և մինչեւ անգամ ամեն օր կ'ընէր առանձին իրեն դեղերը առնելու, իրեն նայող բժիշկները տեսնելով նորա ցաւոց որ քան զոր սաստկանալը՝ բայց որովհետեւ երակաց շարժումները աղէկ կը գտնէին և թէ փոփոխութիւն մը եւս կամ ջերմի երեւոյթ մը չըլլալով, կը յուսացնէին որ վտանգ չի կար. այսպէս շարունակ այս բառերը գործ կը դնէին. « Վտանգի ստուերն անգամ չի կայ »։ Բայց և այնպէս չը նայելով եղբայրս այս խօսքին, և մանաւանդ տեսնելով որ իւր ցաւոց շարունակութիւնը զինքը սաստիկ կը տկարացնէր, իւր խիթին չորրորդ օրը Պ. ժողովրդապետը խրկեց բերել տուաւ և խոստովանեցաւ։ Այս գործը՝ մեծ աղմուկ հանեց, իրեն բարեկամներէն մէկ քանին ստիպուեցան գալ զինքը տեսնելու լի երկիւղով։ Նոյն իսկ բժիշկները այնպէս

զարմացան որ յայտնեցին իրեն, թէ այս երկիւղի նշան էր զոր իրեն չէին յուսար։ Ընդհակառակն այս յուզումը անե-նելով, զոր պատճառած էր իւր խոստովանութիւնը, բաւականին նեղացաւ և ինձ ըսաւ թէ. «Ես կամեցայ հաղորդուիլ, բայց կը տեսնեմ որ մարդիկ զարմացած են իմ խոստովանութեանս վրայ, և այսուհետեւ այլ չը զարմացնելու համար նախամեծար կը համարեմ յապաղել զայն։ Նա Պ. Ժողովրդապետը եւս այս կարծիքէն ըլլալով՝ չը հաղորդուեցաւ։ Սակայն իւր ցաւը կը շարունակէր. և որովհետեւ Պ. Ժողովրդապետը երբեմն երբեմն զինքը տեսնելու կուգար իբր այցելու, ուստի և ոչ առիթ մը կը կորսնցնէր խոստովանելու, և բան մ՚ ալ չէր ըսեր ուրիշին զանոնք չը վըրդովելու համար. որովհետեւ բժիշկները կ՚ապահովցնէին զամենքը թէ վտանգ մը և կամ երկիւղ մը չկայ անոր հիւանդութենէն, և յիրաւի

նուազութիւն մը տեսնուեցաւ իւր ցաւոց, այնպէս որ երբեմն իւր սենեկին մէջ ոտքի կ'ելլէր։ Բայց բոլորովին զինքը չը թողուցին, և երբեմն նաև կը վերադառնային, ուստի սկսեր էին զինքը նիհարցնել. և ասիկայ այնչափ չէր վախցներ բժիշկները. բայց ինչ որ ըսէին, եղբայրս կը կրկնէր՝ թէ ինքը վտանգի մէջ էր, և չը դադարեցաւ երբէք խոստովանելէ որքան անգամ որ Պ. Ժողովրդապետը իրեն մօտ եկաւ. եւ այս միջոցին էր, որ իւր կտակը ըրաւ, որուն մէջ երբէք աղքատները չը մոռցուեցան։ Հրամայեց սաստկապէս, որ ով բան մը չը տրուի անոնց, որովհետև ինձ ըսաւ եթէ Պ. Փերիէ Փարիզ երթայ և հաւանի, իրեն բոլոր բարիքները աղքատաց պիտի ընծայէր. վերջապէս մըտքին և սրտին մէջ ոչինչ չունէր բայց միայն աղքատները. և երբեմն սրտին զեղումը դուրս թափելով կ'ըսէր ինձ. « Ինչու համար ես բան մը չըրի աղքա-

տաց համար ; Թէպէտ և շարունակ դէպ ՚ի աղքատները մեծ սէր մը սրտիս մէջ տածեցի »: Ես ըսի իրեն Թէ՝ « Որովհետեւ բաւականին ստացուածք չունէիք անոնց մեծ օգնութիւններ ընելու »․ որուն նա պատասխանեց․ « Որովհետեւ ես չունէի մեծ հարըստութիւն անոնց օգնելու, պարտաւոր էի սակայն իմ ժամանակս և աշխատութիւնս անոնց նուիրել, և ահա ասոր մէջն է իմ Թերութիւնս, և եԹէ բժիշկները ճշմարիտ կը խօսին, և եԹէ Աստուած այս անգամ ես ինձ շնորհէ իմ առողջութիւնս, որոշած եմ որ երբեք ուրիշ պաշտօնի կամ ուրիշ զբաղմանց չըպիտի տամ իմ անձս, բայց միայն աղքատաց ծառայելու »: Այսպիսի զգացմանց մէջ էր ահա, ուր տէրը զինքը կոչեց․

Եղբայրս՝ իւր եռանդնալից աղքատսիրուԹեանը հետ այնպիսի զարմանալի համբերութիւն մը կը միացունէր, որ իրեն շուրջ եղող անձանց մե-

ծառայէն օրինակ կ՚ըլլար և կը դարմա-
ցունէր խակ դանոնք. և որոնք որ վիշտ
և ցաւ կը յայտնէին զինքը՝ այնպիսի
վիճակի մը մէջ տեսնելնուն համար.
պատասխան կ՚ըստանային այսպէս. „Իմ
կողմէս չեմ ցաւիր, և կ՚երկնչիմ ես
առողջութենէս »: Որուն երբ պատա-
ճառը կը հարցունէին կ՚ըսէր. „Որովհե-
տեւ ես կը ճանչնամ առողջութեան
վտանգները, և հիւանդութեան օ-
գուտները »: Դարձեալ իրեն ցաւոց
ամենասաստիկ ժամանակը, երբ կը
տեսնէր որ իրեն վրայ կուլային, կ՚ը-
սէր. „Իմ վրայ մի՛ լաք և մի՛ զիս ող-
բաք, հիւանդութիւնը՝ ամեն քրիս-
տոնէից բնական վիճակն է. վասն զի
անով մարդը չարութիւն գործելէն
կը դադարի, ինչպէս որ պէտք էր ամեն
ժամանակ այնպէս ըլլալ, անով զգայա-
րանաց հաճոյքներէն կը զրկուի և ա-
մեն շահերէ անմասն, ազատ ամեն
կիրքերէ որ կը տառապեն զմարդ իւր
կենաց ամեն վայրկենին մէջ. վերջա-

պէս ազատ է փառասիրութենէ ագա-
հութենէ՝ միշտ մահու ակնկալելով ։
Քրիստոնէի մը կեանքը՝ պէտք չէ՞ մի-
օր պարապէս անցնի ։ Աշխատութիւն մը
չէ՞ մարդուն, երբ ինքզինքը այնպիսի
վիճակի մը մէջ կը գտնէ ՚ի հարկէն,ուր
ստիպուած էր արդէն ըլլալ, և թէ
ինքն բան մը չգիտնար ընելու . բայց մի-
այն խոնարհութեամբ և անդորրութեամբ
հնազանդել . այս պատճառաւ այս
շնորհքը միայն կը խնդրեմ աստուա-
ծային գթութենէն ։ Ահա այս բոլոր
նեղութեանց և չարեաց առես ինչ մտօ-
քով կը դիմանար և կը համբերէր ։

Շատ կը բաղձար հաղորդութիւն
առնել, բայց բժիշկները ասոր դէմ
կը դնէին, ըսելով թէ չի կրնար ծոմ
կենալ, միայն թէ գիշերուան ժամա-
նակ կարելի է . բայց այսպէս պատշաճ
չէին դատեր առանց մեծ պարտաւո-
րութեան կատարելու . և թէ սուրբ
խորհրդէն ճաշակելու համար պէտք
էր մահուան ճգնաժամին ըլլար, զոր

իր վրայ չընշմարելով չէին կրնար այս խորհուրդը տալ իրեն ։ Այս ընդդէմ մուԹիւնը՝ զինքը կը զայրացունէր , բայց ստիպուած՝ էր անդին տալու ։ Սակայն իր տկարուԹիւնը կը շարունակուէր կրկին , որուն համար պատուիրեցին ջուր խմել , որ արդարեւ զինքը մեծապէս հանգստացուց ։ Բայց օգոստոսի 6 ին էր , Թմրութիւն մը եկաւ վրան՝ սաստիկ գլխու ցաւով մը հանդերձ . Եւ Թէպէտ բժիշկները ատոր վրայ չը զարմացան , եւ Թէ զինքը կ'ապահովցնէին Թէ այս ուրիշ բան չէր բայց միայն ջրոյ շոգին , բայց եղբայրս ուզեց խոստովանիլ , եւ անհաւատալի Թախանձանքներով խնդրեց որ հաղորդուԹիւն ալ տանէ , եւ Թէ յանուն Աստուծոյ միջնորդ մը Թող առաջին առնուի այն արգելքներուն , որք մինչ ցարդ յերեւան ելան . Եւ այնչափ ստիպմունքներ ըրաւ ատոր համար , մինչեւ անձ մը որ ներկայ էր , բակըսաւ զինքը մեղադրել , Թէ անհան-

զատութիւն ունիս, թէ պէտք է բարեկամներուդ հաւատաս, թէ աղէկ վիճակի մէջ ես, թէ տկարութիւնդ գրեթէ լմնցեր է, թէ միայն ջրոց շուգին կայ, և թէ իրաւունք չէ որ բերել տաս սուրբ Խորհուրդը, զոր առնելի լաւ է ուշացնել եկեղեցւոյ մէջ կատարելու համար: Նոր եղբայրս պատասխանեց. «Մարդ մը իմ ցաւս չըզգար, ուստի կը խաբուիմ. իմ գըլխուս ցաւը արտաքոյ կարգի զօրաւոր է. Բայց և այնպէս տեսնելով այնպիսի մեծ ընդդիմութիւն մը իւր բաղձանաց դէմ, չիշխեց այլ ևս անոր վրայ խօսք բանալ, բայց ըսաւ «Որովհետև մարդիկ չի կամեցան այս շընորհքը ինձ ընել, կ'ուզեմ անոր թերին լեցունել բարի արարքով. և եթէ չը կարացի հաղորդակցիլ գլխուն հետ (Յիսուսի) կ'ուզեմ գէթ նոյնը ընել անոր անդամոց հետ. ասոր համար մտածեցի թէ ինձ պէտք է տանս մէջ աղքատ մը ունենալ, որուն մի և նոյն հա-

զգացողութիւնները ըրաւ ինչպէս ինծ, առանձին պաշտպանութիւն ընեն եւ խնամք տանին. Վերջապէս երբեք խրա-րութիւն մը չըրաւ ինծ եւ անոր մէջ. որպէս զի աս մխիթարութիւնը ունենամ թէ՝ կայ աղքատ մը որ ինծ պէս կը հոգացուի, առատութեան մը մէջ ուր կը գտնուիմ ես. որովհետեւ մի եւ նոյն ժամանակ երբ կը մտածեմ որ ես այսչափ աղէկ եմ, եւ թէ կայ անթիւ քաղցութիւն աղքատաց, որոնք առելի հիւանդ են քան զիս եւ միանգամայն զուրկ ամենահարկաւոր բաներէն, այս ինծ մեծ վիշտ կու տայ զոր չեմ կրնար կրել, եւ այսպէս կ'աղաչեմ, Պ. Ժողովրդապետէն խնդրեցէք որ հիւանդ մը գտնէ ունեցած նպաստակիս համար »։

Նոյն ժամուն Պ. Ժողովրդապետին մարդ խրկեցի, որ իմացուց թէ այնպիսի փոխադրութեան վիճակի մէջ գտնուող հիւանդ մը չիկայ. բայց խօսք կուտամ որ ինքը երբ առողջանայ, կը

գտնեմ միջոց մը իրեն մարդասիրու-
Թիւնը 'ի գործ դնելու , յանձնելով
իրեն ծերունին մը՝ որուն վրայ թող
խնամք տանի իւր կենաց բոլոր մնա-
ցորդին մէջ. որովհետեւ Վալըվիդա-
պետը կասկած մը չունէր անոր առող-
ջանալուն վրայ։ Աղը տեսաւ եղբայրս
որ չէր կրնար իրեն տան մէջ աղքատ
մը ունենալ իրեն հետ , գիս աղաչեց
որ իրեն շնորհք մը ընեմ, այն է՝ զինքը
աղքատաց հիւանդանոցը տանել տամ,
որովհետեւ աղքատաց ընկերութեան
մէջ մտնելու սաստիկ իղձ ունէր։ Ես
իրեն ըսի թէ՝ բժիշկները յարմար չեն
դատեր այժմեան վիճակին մէջ տեղ-
ւոյ փոխադրութիւն ընել. որուն վրայ
շատ տրտմեցաւ. Ինձմէ խոստումն ա-
ռաւ որ եթէ քիչ մը հանգստութիւն
գտնէ, իւր այս խնդիրը կատարեմ։
Սակայն այս գլխու ցաւը քանի գնաց
սաստկացաւ, որուն կը տոկար այնպէս՝
ինչպէս միւս ամեն նեղութեանց եւ
չարչարանաց , այսինքն առանց դժգո-

յութեան, և մէկ անգամ՝ սեպտեմբե-
րի 17ին էր՝ ինձ աղաչեց խորհրդակցու-
թիւն մը ընել, բայց իսկոյն կասկածի
երթալով ըսաւ. «Կը վախնամ որ այս
խնդրոյս մէջ թերի գտնուեցաք, շատ
չորոնելով»․ սակայն ես չէի ձգեր զայն
՚ի գլուխ տանել, և բժիշկները պատ-
ուիրեցին որ չխծուկ խմէ, միշտ ապա-
հովցնելով որ վտանգ մը չը կար, և՞
թէ այս ուրիշ բան չէր՝ բայց եթէ
նիհարութիւն խառնուած ջրոց գոլոր-
շիին հետ։ Բայց և այնպէս ինչ որ ը-
սէին, եղբայրս անոնց երբէք չը հա-
ւատաց. և ինձ աղաչեց որ եկեղեցա-
կան մը բերել տամ՝ գիշերը իրեն մօտ.
և այս անգամ՝ նոյն իսկ ես գէշ վիճա-
կի մէջ գտնելով զանիկայ, հրաման ըրի
առանց լուր տարածելու, մոմեր բե-
րել և ուրիշ այն ամեն բաները, ո-
րոնք վաղը առտուն հաղորդութիւնը
տալու համար պէտք էին.

Այս պատրաստութիւնները անա-
գուստ չեղան և մանաւանդ աւելի

շուտ ըսէինք եղան մեր ենթադրածէն, վասն զի գրեթէ կէս գիշեր էր, այնպիսի ջղաձգութիւն մը բռնեց զինքը, որ երբ թող տուաւ, կարծեցինք թէ մեռած էր. և կը սոսկայինք շատերուն հետ տեսնելով որ առանց սրբութեան կը մեռնի, այնքան թախանձանօք և ժտութեամբ խնդրելէն զկնի. Բայց Աստուած որ կը կամէր անոր այնքան արդար եւ եռանդուն խղճը վարձատրել, գրեթէ հրաշքով մը բոլորովին այդ ջղաձգութիւնը դադրեցունելէն վերջը, իւր բոլոր դատողութիւնը իրեն դարձուց, այնպէս որ կարծես թէ կատարեալ առողջ էր. որուն վըրայ Պ. Ժողովրդապետը Սրբութիւնը հետը մտաւ եղբօրս սենեկին մէջ և աղաղակեց. «Ահա այն՝ որուն այնքան ցանկացար»։ Այս խօսքը բաւական եղաւ զանիկայ արթնցունելու, և երբ Պ. Ժ. մօտեցաւ որ տայ, վերջին ճիգ մը ըրաւ եղբայրս ելաւ և կէս նստաւ որ յարգանօք ընդունի Սըր

քաւութիւնը։ Պ. Բ. հաւատոյ գլխա-
ւոր խորհրդոց վրայ քանի մը բան
հարցուց ամփոփութեան համեմատ, ա-
ռուն եղբայրը յստակ կերպով պատաս-
խանեց. «Այո՛, Պ. բոլոր սրտանց կը
հաւատամ այս ամենուն»։ Յետոյ ըն-
դունեց Սրբութիւնն ու վերջին օծու-
մը այնպիսի փափուկ զգացմամբ, ո-
րուն արտասուքը փղձկեցին. Ամենուն
պատասխանելէն ետ Պ. Բ. էն շնորհա-
կալ ըլլալէն զկնի, երբ անիկա սրբա-
սուփով զինքը օրհնեց, ըսաւ՝ «Թող
Աստուած զիս երբէք չը լքանէ»։ Ասի-
կայ իր վերջին խօսքը եղաւ, վասն
զի Սրբութենէն քիչ մը յետոյ Ջղա-
ձգութիւնը սաստիկ կերպով բռնեց
զանիկա եւ այլ եւս չը թողուց մինչեւ
իր մահը, որ եղաւ 1662 օգոստոս 19
ին, առաւօտեան ժամանակ, եւ հա-
սակաւ 39 տարի 2 ամիս.

ՎԵՐՋ

